# ИСТОРИЯ SERAPIAN



История начинается с моего отца, Стефано Серапяна. Он родился в Турции в начале 20-го столетия, но из-за геноцида армян в 1915 – 1922 годах ему пришлось эмигрировать со своим младшим братом (о том, что тогда случилось с их матерью, они так и не узнали). После многочисленных трудностей они наконец-то нашли приют в Венеции у Мхитарианских Отцов (Mekitarians Fathers). Он решил, что для его брата лучше будет остаться учиться вместе с Отцами, в то время как сам он отправился в Милан в надежде на лучшую жизнь. Пережив немало приключений, он наконец-то выучил ремесло обработки кожи и начал делать из различных остатков кожи первые маленькие кожаные аксессуары. Продавая их на севере Италии, в Тоскане, он, наконец, познакомился с моей матерью Джиной, когда она покупала у него что-то из его безделушек.





Затем она решила отправиться с ним в Милан, и так они вместе начали семейный бизнес SERAPIAN.

Произошло это прямо накануне Второй Мировой войны.

После Войны небольшая мастерская постепенно превратилась в первую фабрику, и бутик стал приобретать известность среди миланских потребителей.

Я же родился в Милане в 1951 году (пожалуйста, отметьте, моя мама, мой отец и я – все мы родились в один и тот же день – 14 февраля!).

С самых первых дней я дышал «этим» воздухом, несмотря на то, что я шел своей дорогой, получая образование в Милане и закончив факультет Делового администрирования (Business Administration) в Университете Бокони (Bocconi University).

Все это время моя семья поддерживала тесную связь с армянской диаспорой в Милане, и так, будучи еще очень юным, я встретился с моей будущей женой, Ани, которая сегодня также является неотъемлемой частью компании.

Когда в 1972 году моего отца не стало, мне пришлось быстро подключиться к бизнесу, чтобы помогать своей матери.

С тех пор компания развивалась и расширялась и достаточно сильно изменилась, если сравнивать с тем, чем она являлась в начале.

В течение всех этих лет я также принимал активное участие в жизни нашей армянской диаспоры в Милане: несколько лет я был президентом Главного Армянского Объединения (the General Union of Armenians in Italy) в Италии – орган, который является официальным представителем армянской диаспоры в Италии. Также я был одним из членов Объединения Армянских Церквей (the Armenian Church Association), в котором отвечал за финансирование строительства новых церквей.

С тех пор компания колоссально расширилась. С 2009 года мы производим изделия из кожи для дорогих марок со всего мира, но тем не менее, всегда выпускаем небольшое количество изделий под маркой SERAPIAN для своих клиентов.

С этого момента мы начали развивать свой собственный бренд. Вскоре открылся магазин на via della Spiga Milan в Милане, затем последовало открытие бутика в Венеции (Сан-Марко), и этим августом мы открыли ещё бутики в Риме на via del Babuino и в Porto Cervo Sardinia.

И этот процесс лишь продолжится открытием новых бутиков SERAPIAN в Москве.

*Артавазд СЕРАПЯН.*






***НАША СПРАВКА:*** Итальянский бренд SERAPIAN MILANO (Серапян Милано) начал свою историю в 1923 году, когда Стефано Серапян понял, что обладает огромной страстью и талантом к созданию мелких изделий из кожи. Первая коллекция SERAPIAN была оценена и признана самыми требовательными клиентами Милана. После чего Стефано Серапян собирает вокруг себя других ценных ремесленников, которые специализируются на производстве изделий из кожи. Все специалисты, работая бок о бок, соз-дают уникальные и новые для того времени сумки, которые и сегодня считаются образцами стиля и элегантности. Уникальной технологией Стефано Серапяна была обработка кожи ягненка, как мозаики: ее вплетали кисточкой. И все плетеные сумочки становились уникальными шедеврами дома SERAPIAN. Затем SERAPIAN показывает публике первую эксклюзивную коллекцию созданную с использованием новых материалов, участвует во многих международных выставках и начинает сотрудничество со многими крупнейшими международными партнерами. В 1973 году в правление компании пришел старший сын Стефано – Артавазд (Ardavast), который продолжил и укрепил дело отца. Теперь Серапян будет представлять свой семейный бизнес и в СНГ. Первый магазин открывается в торговой галерее «Москва» (г. Москва).

Сегодня бренд SERAPIAN MILANO знают во всем мире.

## ՄԵՐՈՆՔ ԴՐՍՈՒՄ

# «Հռոմի Հիպոկրատը». հայազգի մեծ բժշկապետ Ջորջո Բայլիվի

Ներկայումս՝ 21-րդ դարում, բժշկական ցանկացած ձեռնարկում և դասագրքում մկանները բաժանվում են երկու տեսակի՝ հարթ և միաձիգ զոլավոր: Սակայն քչերին է հայտնի, որ ավելի քան երեք հարյուր տարի առաջ այդ դասակարգումն արել է հայազգի մի բժիշկ-գիտնական, ով 18-րդ դարի առաջին կեսին «հեղաշրջել է եվրոպական միտքը» (1, էջ 72), դարձել ամենահայտնի կազմախոսը և վիրաբույժն Իտալիայում:

Ինչպե՞ս էր հայտնվել այդ երկրում հայազգի մեծանուն բժիշկը, ովքե՞ր էին նրա ծնողները:

Բանն այն է, որ 16-17-րդ դարերում բազմաթիվ հայեր, հատկապես Նոր Ջուղայից՝ իրենց առևտրական գործերը կարգավորելու նպատակով հաճախ մեկնում էին Եվրոպա և հաստատվում տեղի քաղաքներում: Հայկազն անունով մի հայ առևտրական ևս հաստատվել էր եվրոպական քաղաքներից մեկում՝ Ռագուզայում (ներկայիս Խորվաթիայի Դուբրովնիկ քաղաքում), որտեղ էլ 1668 թ. ծնվել էր նրա որդին՝ ապագա մեծ բժշկապետը՝ Ջորջո Բայլիվին, որի անունը գրականության մեջ երբեմն հանդիպում է նաև Գեորգ Բայլիվի կամ Ջուրո Բագլիվի տարբերակներով (10):

Պետք է նշել, որ անհայտ է Ջորջո Բայլիվիի հայկական անունը: Հայտնի չէ նաև մոր անունը: Առհասարակ շատ քիչ տվյալներ են պահպանվել նրա ծնողների մասին: Մանկությունից միայն հայտնի է, որ կարճ ժամանակ անց փոքրիկ Ջորջոն որբանում է, և ճակատագրի դիպվածով նրան որդեգրում ու իր ազգանունն է տալիս իտալացի բժիշկ Պիետրո Անջելո Բայլիվին, ով որբ մանչուկին իր հետ տանում է Իտալիայի հարավում գտնվող Լեչչե քաղաքը, որտեղ էլ անցնում են նրա մանկության և պատանեկության տարիները (1, էջ 73):

Դեռևս վաղ հասակից Ջորջոն մեծ հետաքրքրություն է ցուցաբերում ուսման նկատմամբ: Իր ուսուցիչներին նա ապշեցնում է արտակարգ ընդունակություններով և աշխատասիրությամբ: Պիետրո Անջելո Բայլիվին ոչինչ չի խնայում իր որդեգրին հիմնավոր կրթություն տալու համար: Իսկ պատանու տարերքը բնական գիտությունները էին, բժշկությունը: Եվ նա կարողանում է հասնել իր նպատակին: Իտալիայի Սալեռնո, Պադուա և Բոլոնիա քաղաքների համալսարանները գերազանց ավարտելով՝ տասնութամյա Ջորջոն ստանում է իմաստասիրության և բշկագիտության դոկտորի աստիճան (5, էջ 31):

1692 թ. քսանչորսամյա հայազգի բժիշկը հաստատվում է Հռոմում, ուր արդեն 1695 թ. սկսած տեղի «Սապիենտիա» («Իմաստություն») ակադեմիայում որպես պրոֆեսոր դասավանդում է կազմախոսություն և վիրաբուժություն առարկաները, իսկ 1701 թ. սկսած ղեկավարում նաև ակադեմիայի տեսական բժշկության ամբիոնը (2,էջ 23-24):

Հռոմում նա ծավալում է գիտամանկավարժական լայն գործունեություն. կարդում է դասախոսություններ, զբաղվում գիտաբժշկական գործունեությամբ: Ջորջո Բայլիվիի համբավը հասնում է Հռոմի Իննոկենտիոս XII պապին, և նա դառնում է վերջինիս, ինչպես նաև հետագայում Կղեմես XI պապի անձնական բժիշկն ու բարեկամը (4, էջ 163-164):

1696 թ. Հռոմում լատիներենով լույս է տեսնում 28-ամյա բժշկի «Գործնական բժշկություն» երկհատոր աշխատությունը, որը նրան արժանացնում է մեծ փառքի: Նրա համբավը տարածվում է ամենուրեք: Նրան շնորհվում են պատվանուններ՝ «Հռոմի Հիպոկրատ», «Նոր Հիպոկրատ», «Ջահ բժշկության», «Բժշկության բարենորոգիչ»: Եվ այդ ամենը պատահական չէր: Նա բժշկության մեջ ասպարեզ եկավ որպես նորարար՝ մեծ նշանակություն տալով գործնական բժշկությանը և հատկապես անտիկ բժշկության բարենորոգիչ Հիպոկրատի սկզբունքներին, որոնք հիմնվում են զննության, փորձառության և տրամաբանության վրա (6, էջ 57-58):

Ջորջո Բայլիվիի հաջողության գրավականներից մեկն էլ այն էր, որ նա կարողացավ տեսական և գործնական բժշկության խնդիրները քննարկել միատեղ, առանց մեկը մյուսից զատելու: Դրա լավագույն առհավատչյան այն է, որ նա տեսական բժշկության հսկայածավալ նյութերի հետ տվել է նաև այս կամ այն հիվանդության բուժման բազմաթիվ դեղամիջոցներ, որոնցից «իպեկակուլա» կոչվող դեղը երկար տարիներ կիրառվել է եվրոպայում՝ որպես դիզենտերիայի բուժման միջոց: Իր «Տեղեկություններ շարժողական նյարդի մասին» աշխատության մեջ Բայլիվին առաջ է քաշել այն միտքը, որ բուժման ակտիվ դերը պայմանավորված է մարմնի ոսկրային ամուր հյուսվածքով (7, էջ 31-32):

Բժշկագիտության պատմության մեջ հայազգի բժիշկը հայտնի է որպես ֆիզիկամեխանիկական ուղղության ներկայացուցիչ, քանի որ մարդկային օրգանիզմի մեջ կատարվող բոլոր փոփոխությունները բացատրել է միայն մեխանիկական գործոններով: Այնուհանդերձ, նա իր ապրած դարաշրջանի այն խիզախ բնագետներից էր, ովքեր քաջ գիտակցել են, որ գործնականում մտքերի նմանատիպ քարացած և հետևողական կիրառմամբ անկարելի է հաջողության հասնել: Ուստի և գործնական բժշկության հարցերում Հիպոկրատից բացի նա հետևել է նաև 16-17-րդ դարերի անգլիացի մեծ իմաստասեր Ֆրենսիս Բեկոնի էմպիրիկ մեթոդոլոգիային:

Ջորջո Բայլիվին բժշկության մեջ մեծ տեղ է հատկացրել դիտողականությանը և փորձին, այդուհանդերձ որոշակի տեղ է հատկացրել նաև բանականությանը, որը, դիտողության հետ կապված, պետք է նպաստեր բժշկագիտության հաջողություններին:

Ժամանակակից տեսական բժշկական հոսանքների ներկայացուցիչների հետ վիճելիս նա միշտ էլ, ինչպես վայել է լրջամիտ գիտնականին, ընդունել է ավելի խելացի և տրամաբանական միջին դիրքը:

Բայլիվին ուսումնասիրել է նաև Իտալիայի հանքային ջրերը, նշել նրանց բուժիչ հատկությունները: Իր դասախոսություններում նա խոսել է հատկապես Իտալիայում հայտնի Ֆիուչիի հանքային ջրի մասին: Երկար տարիներ մանրակրկիտ ուսումնասիրելով այդ ջրի ֆիզիկա-քիմիական հատկանիշները՝ եկել է այն հստակ համոզմանը, որ վերոհիշյալ ջրի օգնությամբ հնարավոր է վերացնել երիկամներում հանդիպող քարային կուտակումները: Հիշյալ հանքային ջրի բուժիչ հատկությունները նա մանրամասնորեն նկարագրել է «Լեղու, նրա բնույթի, ֆունկցիայի ու հիվանդությունների մասին» աշխատության էջերում: Նման հետազոտությունները 17-րդ դարի վերջին, երբ կենսաբանությունը և քիմիան նոր-նոր էին ձևավորվում որպես բնական գիտություններ, իսկապես արժանի էին լրջագույն ուշադրության (5, էջ 29):

Ջորջո Բայլիվիի մահից հետո նրա որոշ կենսագիրները շատ հաճախ նրան անվանել են նաև «Ֆիուչիի հանքային ջրի գիտական հետազոտողը»: Եվ այդ խորքին գիտահետազոտական աշխատանքը կատարվում էր մանկավարժական ամենօրյա աշխատանքին զուգահեռ: 1700 թ. սկսած Հռոմի համալսարանում նա գործնական բժշկության հետ մեկտեղ դասավանդում էր նաև տեսական բժշկություն (1,էջ 74):

Ըստ իտալացի Մացուքելլի, բազմաթիվ բժիշկներ, ովքեր 18-րդ դարի սկզբներին սկսեցին իրենց գործունեությունն Իտալիայում և Եվրոպայի այլ երկրներում, աշակերտել են Բայլիվիին, ով տեղյակ էր իր հայ լինելու մասին և հպարտանում էր դրանով: Նրա հայկական ծագման մասին գիտեին նաև Բայլիվիի ժամանակակիցներից շատերը, և պատահական չէ, որ վերջիններս նրան անվանում էին նաև Ջորջո Բայլիվի-Արմենո (8, էջ 271):

Պետք է նշել, որ հայազգի բժիշկ-գիտնականի մասին շատ է գրվել թե՛ նրա կենդանության օրոք և թե՛ մահից հետո: Այսպես օրինակ՝ 1857 թ. Ջորջո Բայլիվիի մահից ուղիղ 150 տարի անց Փարիզում հրապարակված պատմության և աշխարհագրության հանրագիտարանում երկու էջ նվիրված էր նրան: Հետագայում Հռոմում, Նյու-Յորքում, Էդինբուրգում, Վիեննայում և այլուր հրատարակված հանրագիտարաններում ևս նշվում են Ջ. Բայլիվիի կենսագրությունը և բժշկագիտական գործունեությունը:

1926 թ. Հռոմում լույս է տեսնում 15-18-րդ դդ. ապրած իտալացի հռչակավոր բժիշկներին և բնագետներին նվիրված պրոֆեսոր Պիետրո Կապարոնիի աշխատությունը, որի երեք էջերը նույնպես նվիրված էին Բայլիվիին (3,էջ 121): Զարմանալի զուգադիպությամբ նրա բոլոր կենսագիրները մշտապես շեշտել են նրա ազգային պատկանելիությունը:

Հայ բժիշկ-գիտնականները ևս ծանոթ են եղել Բայլիվիի երկերին՝ չիմանալով, սակայն, նրա ծագման մասին:

Հայ իրականության մեջ Բայլիվին՝ որպես հայազգի հռչակավոր բժիշկ, առաջին անգամ նշվում է 1922 թ. հայտնի «Բազմավեպի» էջերում՝ շնորհիվ անվանի բանասեր Գ. Ոսկանյանի: «Դոկտոր Գևորգ Բայլիվի» հոդվածին (8, էջ 270-273), 1930 թվականին

➲4

ՅՇ

նույն «Բազմավեպի» համարներից մեկում հաջորդում է «Գիտնական հայազգի բժիշկ մը» խորագիրը կրող խմբագրության կողմից գրված երկրորդ հոդվածը, ուր մասնավորապես գրված էր. «Այս հանճարեղ հայ գիտնականին ամենակարճ կյանքն արգելք չեղավ իրեն կանխահաս համբավ մը վաստակելու գիտուններու մեջ: Այսօր ալ անոր անունը հարգանքով և հատկապես կհիշվի այն աղմուկի մեջ, զոր խաչագող Ասուերան բարձրացուց, մինչդեռ բուն Բայլիվին էր, արդի բժիշկների մեջ 18-րդ դ., ինք առաջին անգամ գյուտավոր փորձերով այդ վարպետության գոյությունը մատնանշեց» (9, էջ 43-44):

Խորհրդային Հայաստանում հայազգի բժշկին առաջին անգամ ներկայացրել է ակադեմիկոս Լևոն Հովհաննիսյանն իր «Բժշկության պատմությունը Հայաստանում հին ժամանակներից մինչև մեր օրերը» աշխատության մեջ՝ տալով Ջ. Բայլիվիի համառոտ կենսագրությունը և նրա դերը համաշխարհային բժշկագիտության պատմության մեջ:

Մեծ բժշկապետն ու գիտնականը վախճանվել է 1707 թ. 39 տարեկան հասակում Հռոմում: Պահպանվել են հավաստի տեղեկություններ, թե ինչպես է Հռոմը սգացել Բայլիվիի վաղաժամ մահը: Նա Իտալիայի բժշկագիտության պատմության մեջ թողել է գիտնականի և բժշկի մեծ համբավ: Երեսունը հազիվ բոլորած, Ջորջո Բայլիվին եվրոպական բազմաթիվ ակադեմիաների և գիտական ընկերությունների, այդ թվում՝ Աուգսբուրգի կայսերական և Լոնդոնի Արքայական ընկերությունների անդամ էր (4, էջ 163-164): Նրա թողած բժշկագիտական հսկայածավալ գրականությունը, որը գրված է լատիներենով և իտալերենով, այսօր էլ Իտալիայի ազգային սեփականությունն է և հոգևոր հարստությունը: Այդ աշխատությունները հեղինակի մահից հետո բազմիցս հրատարակվել են Հռոմում, Լիոնում, Վիեննայում, Լայպցիգում և այլուր, թարգմանվել եվրոպական բազմաթիվ լեզուներով:

Ջորջո Բայլիվին նաև հայ ժողովրդի հպարտությունն է, իմաստուն հայի այն տեսակը, որով մեր ժողովուրդը ճանաչելի է դառնում համայն աշխարհին:

*Վաչագան ԽԱՃԱԿՅԱՆ,*
*պատմ. գիտ.թեկնածու, դոցենտ*

**ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**

1. Ա. Մեզպուրեան, Հայ և ծագումով հայ բժիշկներ, Իստամբուլ, 1950:
2. Լ. Հովհաննիսյան, Պատկերազարդում հայ բժշկության պատմության վերաբերյալ հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը, Երևան, 1958:
3. Ռ. Փարսադանյան, Հայ բժշկության պատմությունից, Երևան, 1958:
4. Ա. Բախչինյան, Հայազգի գործիչներ: Հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը: Կենսագրական հանրագիտակ, Երևան, 2002:
5. Հայ անվանի բժիշկներ, Երևան, 2002:
6. Оганесян Л. А. История медицины в Армении. В 5-и т. Т. 3. Ереван, 1946-1947.
7. Айриян А. П. Армянские ученые-медики. Ереван, 1998.
8. «Բազմավեպ», 1922, սեպտեմբեր:
9. «Բազմավեպ», 1930, հունվար:
10. «Հայաստանի Հանրապետություն», 2001, ապրիլի 14:

# Մարտիրոս Սարյանի նամակը Լեոնիդ Բրեժնևին

**22.01.1968 թ., Երևան, Մեծարգո Լեոնիդ Իլյիչ**



Մոտ օրերս լրանում է իմ 88 տարին և նախքան այս աշխարհից հեռանալը ցանկություն ունեմ ոտք դնել այն հողի վրա, որտեղից դուրս են եկել իմ նախնիները:

Դրանք միջնադարյան Հայաստանի մայրաքաղաք Անիի ավերակներն են, որոնք գտնվում են Թուրքիայի հետ սահման կազմող Ախուրյան գետի հանդիպակաց ափին: Դա՝ համաշխարհային նշանակության ճարտարապետական այդ հուշարձանը, իմ ժողովրդի հպարտությունն է և սեփականությունը: Հինգ քառակուսի կիլոմետր տարածքը, որը զբաղեցնում են Անի քաղաքի ավերակները, մեծ չէ, բայց այդ փոքր հողակտորը հանդիսանում է Հայաստանի սրբավայրը:

Ես ողջ ժողովրդի անունից, ողջ քաղաքակիրթ մարդկության անունից խնդրում եմ Ձեզ, վերադարձրեք Անին մայր հայրենիքի գիրկը, թույլ միք տա նրան վերջնականապես անհետանալ օտարերկրյա տիրապետության հարվածների տակ:

Փրկեցե՛ք Անին և շնորհակալ հայ ժողովուրդը ողջ աշխարհի առջև դարեդար կհատուցի Ձեզ խորին երախտագիտությամբ և հիացմունքով:

*Մարտիրոս ՍԱՐՅԱՆ*
*Սոցիալիստական աշխատանքի հերոս,*
*ԽՍՀՄ ժողովրդական նկարիչ,*
*Լենինյան մրցանակի դափնեկիր*

# Լավ տրամադրության 10 գաղտնիք

**1.** Միշտ բարձր տրամադրություն ունենալու համար սովորե՛ք ինքներդ ձեզ կառավարել: Դատարկ բաներից մի՛ վիրավորվեք, փորձե՛ք չկռվել ձեզ մտերիմ մարդկանց հետ, ներե՛ք նրանց: Ներելով՝ ազատվում եք զայրույթից և ոխակալ զգացողություններից, որոնք առաջին հերթին հենց ձեզ են կործանում: **2.** Փորձե՛ք աշխարհին հումորով նայել: Նույնիսկ եթե ձեզ վիրավորել են, կամ հայտնվել եք ծանր իրավիճակում, այնուամենայնիվ ժպտացե՛ք և ինքներդ ձեզ ասեք. «Սա էլ կանցնի»: Անհավատալի է, բայց իսկապես նրանց համար, ովքեր անկեղծորեն հավատում են սրան, վատ բաներն անցնում են: **3.** Մի՛ նստեք տանը՝ ամբողջ աշխարհից նեղանալով: Կարող եք չկասկածել՝ փողոցում, ընկերների և ծանոթների շրջապատում, վատ տրամադրություն չի լինում: Ապացուցված է: **4.** Ձեր կյանք նորարարության տարրեր մտցրե՛ք: Հոգեբանները խորհուրդ են տալիս՝ ժամանակ առ ժամանակ փոխել սովորությունները, օրինակ՝ նոր հոբի ունենալ կամ հագուստի ոճը փոխել: **5.** Սովորե՛ք լիցքաթափվել: Երբ ինչ-որ հոգնեցուցիչ աշխատանք եք անում, մտածե՛ք մի ինչ-որ հաճելի բանի մասին: Օրինակ՝ ընկերների կամ սիրելիի հետ առաջիկա հանդիպման մասին: **6.** Լողա՛ցե՛ք զբաղվեք: Ջուրը մարմնին օգնում է հանգստանալ և լիցքաթափվել՝ տոնուսն ու տրամադրությունը բարձրացնելով: Բացի դրանից, դժբախտ պատահարի և փասվածք ստանալու հնարավորությունը շատ քիչ է, համեմատած ջրային այլ մարզաձևերի հետ: **7.** Կանգնե՛ք, հե՛տ նայեք... Երբեմն մարդիկ ծուղակում են հայտնվում, որովհետև ժամանակ չեն ունենում մտածելու՝ արդյոք անհրաժեշտ ուղղությամբ են շարժվում: Ժամանակն է մտքերը, նպատակները, կապերը կարգի բերելու այնպես, ինչպես պարբերաբար սենյակն եք կարգի բերում: **8.** Թեթև նայեք կյանքին: Կյանքում միշտ էլ սխրագործությունների տեղ կա, բայց ոչ միշտ են դրանք անհրաժեշտ: Փորձե՛ք կենտրոնանալ նրա վրա, ինչ ներկա պահին եք անում: **9.** Պահպանե՛ք հեռանկարի զգացումը: Կյանքը հենց շարժում է, և այն, ինչ այսօր ողբերգություն է, հնարավոր է, վաղը ժպիտ կպարգևի: Չէ՞ որ իզուր չեն ասում՝ օրը կգա՝ բարին հետը (սա ասացվածք է, պետք էր համարժեքը գտնել): **10.** Մոռացե՛ք տհաճությունների մասին: Եթե ուզում եք պառկել անկողնում ու խղճալ ինքներդ ձեզ, ավելի լավ է չենթարկվել այդ ցանկությանը: «Շարժվե՛ք, և ձեր զգացմունքները կդառնան ավելի շարժական, – ասել է հոգեբան Մերինո Դիլվորտը, – Ֆիլմ նայեք, մաքրություն արե՛ք...»:

# ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 2-Ը ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՏՈՆ Է

Սեպտեմբերի 2-ը համազգային տոն է՝ Լեռնային Ղարաբաղի Հանրապետության հռչակման օրը: Հաղթելով Ադրբեջանի կողմից պարտադրված պատերազմում, արտահայտելով ժողովրդի հավաքական կամքը՝ Արցախը հռչակեց և պաշտպանեց իր անկախությունը:

Լեռնային Ղարաբաղի Հանրապետության անկախության հռչակագիրն ընդունվեց ժողովրդական պատգամավորների ԼՂԻՄ մարզային և Շահումյանի շրջանային խորհուրդների՝ բոլոր կարգի պատգամավորների մասնակցությամբ տեղի ունեցած համատեղ նստաշրջանում:

Սեպտեմբերի 2-ին լրանում է այդ նշանակալի իրադարձության 22-րդ տարեդարձը: Անցած տարիների ընթացքում արցախահայությունը ապացուցեց, որ հավատարիմ է ժողովրդավարության արժեքներին և պատրաստ է հաղթահարել պետականաշինության ճանապարհին ծագած բոլոր դժվարությունները: Դեռևս կան չլուծված բազմաթիվ խնդիրներ, սակայն իրողություն է նաև այն, որ կա Լեռնային Ղարաբաղի 22-ամյա երիտասարդ հանրապետությունը, որ վստահ քայլերով շարժվում է առաջ՝ ապավինելով սեփական ուժերին, Հայաստանի Հանրապետության և Սփյուռքի մեր հայրենակիցների շարունակական աջակցությանը:

Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունում անկախության առաջին իսկ տարիներից թողարկվել են նամականիշեր: Առաջիններից մեկը պետական խորհրդանիշերը՝ դրոշը, զինանշանը, նաև Սարգիս Բաղդասարյանի «Մենք ենք, մեր սարերը» հայտնի հուշարձանը պատկերող նամականիշերն են:




Ուշագրավ է Գանձասարը պատկերող մանրաթերթիկը, որը հետագայում՝ Շուշիի ազատագրման 5-րդ տարեդարձի առթիվ, լույս տեսավ վերանշումով՝ 09.05.1992 – 09.05.1997 թվագրությամբ և «Շուշիի ազատագրման հինգերորդ տարի» հայերեն և անգլերեն մակագրությամբ: Խաչի ֆոնին պատկերված են՝ վերևում՝ Գանձասարի վանքը, ներքևում՝ ազգային տարազով ղարաբաղցի կին և տղամարդ: Հետագայում ևս տպագրվել են արցախյան նշանավոր վանքերի, այդ թվում և Ղազանչեցոց վանքի պատկերով նամականիշեր: Մի քանի նամականիշ է թողարկվել Ղարաբաղի անկախության 20-ամյակի կապակցությամբ:

Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունում թողարկված նամականիշերը բազմազան են իրենց թեմատիկայով. կան Արցախի բուսական և կենդանական աշխարհին, բնաշխարհի պաշտպանությանը նվիրված նամականիշեր: Թողարկվել են նաև առաջին հայ տիեզերագնաց Ջեյմս Բաղյանին, նաև աշխարհի առաջին տիեզերագնաց Յուրի Գագարինի թռիչքի 50-ամյակին նվիրված նամականիշեր: Առանձին նամականիշ է նվիրվել «Մանկական եվրատեսիլի» հաղթող Վլադիմիր Արզումանյանին:

Ղարաբաղյան շարժման 10-ամյակի կապակցությամբ 1998-ին Հայաստանի Հանրապետության հետ համատեղ թողարկվել է նամականիշ՝ ճախրող արծվի պատկերով՝ համապատասխան հայերեն և անգլերեն մակագրություններով:

Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունում թողարկված ավելի քան հարյուր նամականիշերը, ծրարները, բացիկներն ու հատուկ կնիքները մեծ հետաքրքրություն են ներկայացնում աշխարհի ֆիլատելիստների շրջանում:

***Վարուժան ԱՆՏՈՆՅԱՆ***

# Իմաստունի դասը – առակ



Մի ծեր ու իմաստուն մարդ ասում է իր ընկերոջը.

- Լավ ուսումնասիրիր սենյակը, որում մենք գտնվում ենք և փորձիր հիշել բոլոր շագանակագույն առարկաները:

Սենյակում շատ շագանակագույն առարկաներ կային և ընկերը շատ արագ կարողացավ հաղթահարել այդ խնդիրը:

Բայց իմաստունը նրան հղեց երկրորդ հարցը.

– Իսկ հիմա փակիր աչքերդ և թվիր բոլոր երկնագույն առարկաները:

Ընկերը զայրանում և շփոթվում է.

– Ես ոչ մի երկնագույն առարկա չեմ տեսել, չէ՞ որ ես քո խնդրանքով ուշադրություն եմ դարձրել միայն շագանակագույն առարկաներին:

Ինչին իմաստունը պատասխանում է.

– Բացիր աչքերդ և ուշադիր նայիր, որովհետև սենյակում բազում երկնագույն առարկաներ կան: Եթե դու փնտրում ես սենյակում միայն շագանակագույն առարկաներ, իսկ կյանքում միայն վատը՝ ապա դու հենց դրանք էլ կտեսնես և հենց դրանք դու միայն կհիշես և միայն դրանք մասնակցություն կունենան քո կյանքում:

**Հիշի՛ր. եթե դու փնտրում ես վատը, դու միայն դա էլ կգտնես և չես նկատի ամեն լավը, որոնք քեզ շրջապատում են:**

***arxangelo.info***

# Քաղաք Արմենիա՝ Կոլումբիայում



Քաղաքը հիմնվել է 1880-ական թվականներին և դժվար չէ կռահել, որ քաղաքը հիմնվել է հայերի կողմից:

Քաղաքը հայտնի է իր էլիտար սուրճերի տեսակներով և այդ պատճառով Արմենիային անվանում են նաև Կոլումբիայի «սուրճի մայրաքաղաք»:

Արմենիայում գործնականորեն բացակայում են աղքատության որևէ նախանշաններ և Արմենիան հանդիսանում է Կոլումբիայի ամենամաքուր և ամենագեղեցիկ քաղաքներից մեկը:

# Հայոց այբուբենի գաղտնագրման գաղտնիքը



Արծվի Ալեքսանյանը մասնագիտությամբ գեոֆիզիկ է: Նախ գերազանց գնահատականներով ընդունվել է Երևանի պետական համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետ, սակայն շուտով հասկացել է, որ ֆիզիկան իրեն չի բավարարում, դուրս է եկել, ծառայել է բանակում, իսկ հետո ընդունվել է Երևանի պետական համալսարանի Երկրաբանական ֆակուլտետի գեոֆիզիկայի բաժին: Ունի հետաքրքրությունների լայն շրջանակ: Արծվի Ալեքսանյանը շուրջ 40 տարի ուսումնասիրել է այբուբենը և եկել այն եզրակացության, որ հայոց այբուբենը ոչ միայն ազգային, այլև համամարդկային նախաայբուբենն է (պրոտոայբուբեն): Այնտեղ հայտնաբերել է մաթեմատիկական օրինաչափություններ, որոնք չկան և ոչ մի ուրիշ այբուբենում: Հենց սա էլ, ըստ Ա. Ալեքսանյանի՝ ամենահամոզիչ ապացույցն է այն բանի, որ Հայոց այբուբենը ստեղծվել է ոչ թե 406 թ.-ին, այլ շատ ավելի վաղ, անհիշելի ժամանակներից: Նախապատմական ժամանակներից: Այդ օրինաչափությունններն արտահայտվում են բազմաթիվ գծագրերով և բանաձևերով: Այդ տարիների ընթացքում Ա. Ալեքսանյանը բացահայտել է Հայոց այբուբենում գտնվող գաղտնագրման բազմաթիվ մեթոդներ: «Դա անհավանական է թվում, սակայն այդ ամենն ունեն անհերքելի մաթեմատիկական ապացույցներ: Ես դա կարող եմ ապացուցել: Այբուբենի գաղտնագրման մեթոդները բազմատեսակ են և շատ հետաքրքիր: Պարզվում է, որ դա մի ամբողջական սիստեմ է, որտեղ անմիջական կապ կա նրանց ձևի, քանակի և տառերի հերթականության միջև: Եվ մեծ համբերություն էր պետք՝ շտապ եզրակացություններ չանելու, անմիջապես ենթադրություններ չանելու և այդ ամենը ստուգելու համար:

Քանի որ մի ապացույցը դեռ բավարար չէի համարում, ինձ մի քանի ապացույցներ էին անհրաժեշտ: Օրինակ, ինչո՞ւ պետք է հայերեն «ր» տառով բառեր չսկսվեն, մինչդեռ այլ լեզուներով նման բազմաթիվ բառեր կան, իսկ «ր»-ով սկսվող բառերը արտաբերելը մեզ համար խնդիր չէ: Ասես մի ինչ-որ ձեռք վերցրել և ջնջել է «ր» տառով սկսվող ողջ բառաշարքը: Մինչդեռ հետաքրքիրն այն է, որ երբ «ր»-ից առաջ դնում ենք բոլոր ձայնավորները, դրանք իմաստ են ստանում՝ օր, իր, ուր և այլն, որոնք պատասխանում են՝ որտեղ, ինչ և այլ իմացաբանական հարցերի: Այդ ամենը գուցե առաջին հայացքից մանրուք է թվում, բայց այդ մանրուքն ինձ մեծ բան է ցույց տվել», – ասաց Արծվի Ալեքսանյանը: Հայոց այբուբենի կառուցվածքը, ըստ Ա. Ալեքսանյանի, պատահական չէ: «Եթե եռանկյան մեջ շարում ենք այբուբենի 36 տառերը, ապա եռանկյան գագաթներում ստանում ենք ԱՄՔ տառերը, որը հենց ասելիք, ասք բառն է, որը ռուսերենում դառնում է сказка», – ներկայացրեց Ա. Ալեքսանյանը՝ ավելացնելով, որ մաշտոցյան այբուբենը մաթեմատիկական մատրիցա է ոչ միայն խոսակցական լեզվի համար, այլ նաև ունիվերսալ կոդ է բոլոր տեսակի հաղորդակցությունների համար: Ա. Ալեքսանյանը գիտակցում է, որ շատերին այս ամենը կարող է տարօրինակ և անհավանական թվալ, սակայն այդ եզրահանգումներին նա հասել է տարիների քրտնաջան աշխատանքի շնորհիվ: «Ես ուսումնասիրել եմ պատմության հայտնի ինֆորմացիայի հին արմատները (սանկրիպտ և այլն), որտեղ բոլորը միախառնում են և հնաբանությունը, և մարդաբանությունը, և լեզուն, և մաթեմատիկան, և քիմիան, ամեն ինչ կարծես այդ ամբողջական տեղեկատվության մի մասնիկն է, ու լրացնում են մեկը մյուսին: Սակայն մի բան ես վստահ կարող եմ և պատրաստ եմ ապացուցել, որ բոլոր այբուբենները ծնվել են հայերենի այբուբենից, և սա ասում եմ ոչ թե զուտ ազգայնասիրական տեսանկյունից ելնելով», – ասաց Ա. Ալեքսանյանը: Վերջինիս համոզմամբ՝ ոչ միայն կարևոր է տառերի ձևը, այլև դրանց հերթականությունը, քանակը պատահական չեն և հատուկ նշանակություն ունեն: «Հայերեն այբուբենում այդ ամենը կատարյալ է ներկայացված: Ոչ մի այբուբեն չունի մեր այբուբենի մեջ եղած օրինաչափությունների անգամ մեկ տոկոսը, այսինքն՝ նրանք, ի տարբերություն մեր այբուբենի, մաթեմատիկական սիստեմ չեն, մաթեմատիկական ալգորիթմ: Մինչդեռ տառերի տակ գաղտնագրված ինֆորմացիան կարդալու համար նախ պետք է ճիշտ գտնեն ձևը, այսինքն՝ տառի ձևը կապես մեր ենթագիտակցությանը ծանոթ այլ ֆիզիկական պարամետրերի հետ: Տառերի տակ գտնվող ինֆորմացիան վեր հանելու դեպքում մենք հսկայական տեղեկատվություն կունենանք», – ասաց Ա. Ալեքսանյանը: Ըստ Ա. Ալեքսանյանի՝ աշխարհում դեռևս որևէ լեզվաբան չի ասել, որ տառերի հերթականությունը պետք է դիտել որպես մաթեմատիկական շարք, ավելի ճիշտ՝ ֆիզիկա-մաթեմատիկական շարք: Սակայն ինքը այբուբենը դիտարկում է հենց այդպես: Օրինակ, խմբավորելով արտասանությամբ միմյանց մոտ գտնվող տառերը, օրինակ՝ ԲՊՓ, ԳԿՔ և այլն, Ա. Ալեքսանյանը Հայոց այբուբենից ստացել է 5 եռանկյունի: Մինչդեռ, օրինակ՝ ռուսերեն լեզվի մեջ նման երեք տառանոց խմբեր գոյություն չունեն: «Մեր այբուբենը, ի տարբերություն մյուս լեզուների, կատարյալ սիստեմ է: Մեր այբուբենը համամարդկային գանձ է, և ես հիանում եմ դրանով: Հայոց այբուբենում մենք կարող ենք գտնել արդի շատ կարևոր և կիրառական ինֆորմացիաներ: Օրինակ՝ այբուբենի ալգորիթմով կարելի է ստեղծել ավելի հզոր համակարգիչներ, քան ներկայիս համակարգիչներն են: Այսպիսով՝ մաթեմատիկական ճշգրտությամբ կարելի է ապացուցել, որ հայերենի այբուբենից են ծնվել մյուս բոլոր այբուբենները, և խոսքը ոչ միայն տարբեր լեզուներին է վերաբերում, այլև հաղորդակցության բոլոր ձևերին, օրինակ՝ երաժշտական լեզվին, մաթեմատիկական լեզվին կամ, ասենք, ձկների լեզվին: Ավելի քան 40 տարի ես ուսումնասիրել եմ և պարզել մաթեմատիկական ճշգրտության և տառերի քանակը, ձևը և դրանց հերթականությունը: Այդ բոլորի համար համընդհանուր սիստեմ եմ գտել», – ասաց մեր զրուցակիցը: «Տրամաբանական վերլուծության ենթարկելով մյուս լեզուների այբուբենը, պատրաստ եմ ցանկացած ընդդիմախոսների «քար ծակող» փաստարկներով ապացուցել, որ բոլոր այբուբենները ծնվել են հայոց այբուբենից: ☞7



11/03/2012



11/03/2012



11/03/2012

**Մաշտոցը ոչ թե հնարել, այլ վերականգնել է հայոց տառերը:**

# Գիտնականները պնդում են՝ նախամաշտոցյան գիր գոյություն է ունեցել

**Թարգմանչաց տոնը ներառված է Հայ առաքելական եկեղեցու տոնացույցում… Այս հանգամանքը տպավորություն է ստեղծում, թե հայ իրականության մեջ թարգմանության արվեստը սկիզբ է առնում քրիստոնեության ընդունումից հետո և պայմանավորված է Սուրբ Մեսրոպ Մաշտոցի արտասահմանյան շրջագայությունից հետո Հայաստանում հայտնված նշանագրերով…**

Հայագիտության մեջ գերակշռող տեսակերտը, թե 405 թ. առաջ հայոց լեզուն երբևէ գրավոր չի եղել, այժմ արդեն դեմ է առնում մի անանցանելի պատի, որից այն կողմ թափանցում են միայն չհիմնավորված պնդումները… Իսկ գիտական կեղծարարությունից զերծ ուսումնասիրություններն ու փաստարկումները վկայում են գիր, ուրեմն՝ նաև գրականություն, իսկ սա նշանակում է՝ նաև թարգմանական արվեստ, նախաքրիստոնեական Հայաստանում առկա է եղել…

Դեռևս խորհրդային տարիների հայ գրականության դասագրքերում մի աղոտ ակնարկ կար այն մասին, թե հնարավոր է՝ հեթանոսական մեհյաններում գրականություն է ստեղծվել, որը ոչնչացվել է քրիստոնեություն ընդունելու ժամանակ, երբ ավերվել են բոլոր հեթանոսական տաճարները… Այս մշուշոտ ենթադրությունը հետագա կրթության ընթացքում լիովին տեղը զիջում էր համոզմունքին, թե մինչև հինգերորդ դարը հայերն օգտվել են միայն ուրիշների ստեղծած գրերից, և գրավոր հաղորդակցությունն էլ եղել է այդ գրերին համապատասխան օտար լեզուներով…

Ցավոք, նման մտայնությունը հայագիտության մեջ խոր արմատներ ունի… Օրինակ, ժամանակին մեզ է փոխանցվում մի խոր «ճշմարտություն»՝ եթե որևէ բառ հայերենում ու պարսկերենում ընդհանուր էր, անպայման եզրակացությունը մեկն էր՝ հայերենը փոխ է առել պարսկերենից, եթե, իհարկե, պատահաբար չի պահպանել հնդեվրոպական նախալեզվից ժառանգածը… Նման կերպ պարզվում էր, իբր հայերենը մի անտակ պարկ է, որի մեջ իրենց բառապաշարն են լցրել մեզ հետ առնչվող բոլոր լեզուները, իսկ մենք ուրիշներին տալու գրեթե ոչինչ չենք ունեցել:

ԵՊՀ անտիկ գրականության մեր դասախոսը՝ Լևոն Ներսիսյանը, ասում էր՝ հին հունական մշակույթն ու հինգերորդ դարի հայ գրականությունը նույն տեսակի հրաշքներ են… Այսօրվա գիտությունը այդ երկու «հրաշքն» էլ բացատրելի է համարում: Քայլ առ քայլ հայտնաբերվում են անհերքելի փաստեր, որոնց համաձայն՝ հազարամյակներ առաջ մարդկային քաղաքակրթությունը շատ ավելի զարգացած է եղել, քան այսօր հնարավոր է երևակայել… Մի կողմ թողնելով հունական մշակույթի խնդիրը, նշենք՝ հինգերորդ դարում՝ մեր գրականության ոսկեդարում, առաջին ծավալուն գործը, որ հայերեն թարգմանվեց, Աստվածաշունչն էր: Ու հենց այս առաջին թարգմանությունն էլ արժանացավ «թագուհի թարգմանչաց» բնորոշումին: Մյուս «հրաշքը», անկասկած, իբրև թե նոր միայն գրավոր դարձած լեզվով միանգամից գրականության ոսկեդարի հաստատումն էր, այն դեպքում, երբ դրանից հետո արդեն տասնվեց դար հայ գրականության ընթացքը չի ընդհատվել:

Վերջերս ծանոթացա հայագետ Արտակ Մովսիսյանի մեկնաբանությանը. միջազգային փորձը հաստատում է՝ երբ գիր չունեցող, իսկ դա նշանակում է՝ գրական մշակման չենթարկված, բարբառի վիճակում գտնվող որևէ լեզու նոր-նոր գրի է առնվում, շուրջ 7000 բառից կազմված բառապաշար է ունենում, մինչև որ այսուայնտեղից փոխ է առնում ու լրացնում գաղափարների, երևույթների, առարկաների պակասող անունները: Մինչդեռ հինգերորդ դարի հայերենում միանգամից շուրջ 60000 հայերեն բառ կա: Արդյոք սա՞ էլ է հրաշք, թե պարզապես նշանակում է, որ նախաքրիստոնեական Հայաստանում հայերենը գրավոր լեզու է եղել, մշակվել է, հարստացել լեզվական կաղապարներով, արտահայտչամիջոցներով:

Եթե հայերենը գրավոր չի եղել, տեսնես ի՞նչ է անում հայոց դիցարանում գրի ու դպրության Տիր աստվածը, միթե բազմազանության համար…

Բանասիրության դոկտոր Ալբերտ Մուշեղյանի հրապարակումներից մեկի վերնագիրն է՝ «Հայոց լեզվով գրքեր՝ Մեսրոպ Մաշտոցից չորս դար առաջ»: Գիտնականը գրում է. «Նախաքրիստոնեական շրջանում գոյություն ունեցած հայերեն գրի և գրականության մասին վկայություններ են պահպանվել անտիկ օտար հեղինակների երկերում: Հռչակավոր հույն փիլիսոփա և պատմագիր Մետրոդորոս Սկեփսիացին, ապրելով Պոնտոսում և Հայաստանում մինչև մ.թ.ա. 70 թ., գրել է Տիգրան Մեծի պատմությունը և «Կենդանիների բանականությունը» փիլիսոփայական երկը: Այս վերջինը, ըստ Փիլոն Եբրայեցու (Ալեքսանդրացու) հաղորդման, որն ապրել է մ.թ.ա. I դ. վերջին քառորդից մինչև մ.թ. I դ. կեսը, թարգմանված է եղել հայերեն: Փիլոն Եբրայեցու նման քաջատեղյակ և բծախնդիր օտար հեղինակի այս համոզիչ հաղորդումը մեր թվարկության դարագլխին գոյություն ունեցած հայալեզու գրականության մասին, որ վկայակոչվում է առաջին անգամ, չի կարող չսասանել նույնիսկ ամենակարծր հակաթեզերը:

Հենց միայն Փիլոնի սույն վկայությունը բավական է՝ ժխտելու տարածված կարծիքը, որ եթե նախամաշտոցյան շրջանում գոյություն է ունեցել գրավոր հայ գրականություն, ապա միայն հունարեն, ասորերեն կամ պարսկերեն լեզուներով, իսկ հայոց լեզվով եղել է՝ միայն բանավոր գրականություն, այսինքն՝ բանահյուսություն: Եվ անմիջապես հարց է ծագում՝ ի՞նչ գրով են գրված եղել երեք հայալեզու գրքերը, եթե ոչ հայերեն այբուբենով, որի մասին վկայում է 3-րդ դարի ժամանակագիր և եկեղեցական մեկնիչ Հիպողիտոսը»:

Ալբերտ Մուշեղյանը նաև նշում է, որ 234-235 թթ. գրած իր աշխատության մեջ Հիպողիտոսը հայերին դասել է գիր ունեցող ազգերի շարքին. «Հունարեն բնագրով իր «Ժամանակագրության» մեջ՝ գրված Ալեքսանդր Սևերոս կայսեր 13-րդ տարում՝ մ.թ. 234 - 235 թթ., Հաբեթի ցեղի 47 ազգերի շարքում որպես գրագետ (գիր ունեցող), Հիպողիտոսը հիշատակում է հետևյալ յոթին՝ իբերներ, լատիններ, որոնց գիրը նաև հռոմներն են գործածում, իսպանացիք, հույներ, մարեր, հայեր»:

Եվ վերջապես՝ բուն հայոց գրերի մասին: Ժայռապատկերներ և տարբեր արձանագրություններ ուսումնասիրողները վաղուց են նկատել՝ հազարամյակներ ի վեր Հայաստանի ժայռերին ու քարերին պատկերվել են նշաններ, որոնք շատ նման են մեր այբուբենի տառերին և այսօր գործածվող այլ նշանագրերի: Պարիս Հերունու «Հայերը և հնագույն Հայաստանը» գրքի 108-րդ էջում պատկերված աղյուսակն ավելի քան խոսուն է, եզրակացությունն էլ՝ այն, թե հայոց տառերն են դարձել թե փյունիկյան, թե արամեական կոչվող գրերի հիմքը: Ես հակված չեմ մտածելու, թե քանի որ Հերունին պատմաբան կամ բանասեր չէ, ուրեմն իրավունք չունի հայագիտությամբ զբաղվելու. նրա փաստարկներն ինձ համոզում են: Մանավորապես խոսելով

➲8

6➲

Բացի դրանից, դրանք Հայոց այբուբենի կիսահասկացված, թերի ձևերն են: «Ես այբուբենի մեջ գտա նոտաները, նոտաների թվային մաթեմատիկական արժեքը, որոնք հայտաբերվել են ընդամենը վերջերս: Ցանկացած նոտա կոտորակ է, և այդ կոտորակների արժեքը նույնպես դրված է մեր այբուբենի մեջ: Ես կենսաբան չեմ, սակայն ինձ թվում է, որ Հայոց այբուբենում կա նաև մարդու գենետիկ կոդի գաղտնիքը, ես հիմքեր ունեմ այդպես մտածելու», – ասում է Ա. Ալեքսանյանը: Ա. Ալեքսանյանը համոզված է, որ «մեր այբուբենը ոչ միայն մեր ազգի, այլև համամարդկային և համաշխարհային գանձ է: Մեր այբուբենը մեր գերհզոր նախնիների, հայրերի կոդավորված փոխանցումն է մեզ, այբուբենի տակ գտնվող գանձից, ցանկալի է, որ առաջինը օգտվի մեր ազգը»:

***Լուսինե ՄՈՎՍԻՍՅԱՆ***

7Ͽ

Մեսրոպ Մաշտոցի արտասահմանյան ուղևորության մասին, որի նպատակն էր հայոց լեզվի համար գրանշաններ ստեղծելը, Հերունին եզրակացնում է, որ նա այնտեղ ուղղակի փնտրել է հայերեն գրքեր, որոնք Հայաստանում անխնա ոչնչացվել էին: Անցած հարյուր տարվա ընթացքում նս մարդիկ մոռացել էին, թե ինչպես են հնչում այն նշանները, որոնք դեռևս պահպանվել էին Հայաստանի արձանագրություններում ու ժայռապատկերներին: Մաշտոցի ու նրա աշակերտների նպատակն էր օտար երկրների գրադարաններում փնտրել ու գտնել հայերեն գրքեր և դրանց միջոցով կրկին «խոսեցնել» համրացած գրերը: Ըստ Հերունու՝ Մաշտոցը ոչ թե հնարել, այլ վերականգնել է հայոց տառերը:

Իսկ այժմ, երբ ունենք թարգմանական հարուստ ավանդույթներ, տեղեկատվական տեխնոլոգիաների մեր դարում դրանք չենք գնահատում ու կորցնում ենք... Ժամանակը չէ՞, որ օտար կաղապարները, բառապաշարն ու արտասանությունը հայերենին անքննադատ պարտադրելու փոխարեն սովորենք հարգել մեր լեզվի օրինաչափությունները... Մեկ-մեկ կարծիքներ են հնչում, թե հայերենը հարմար չէ այս կամ այն ոլորտում կիրառելու համար... Նման դեպքերում ես մի պատասխան ունեմ՝ եթե մտքերը դժվարությամբ են արտահայտվում, մեղավորը ոչ թե լեզուն է, այլ դրա իմացության մակարդակը...

*Արմենուհի ԹՈՒՄԱՆՅԱՆ*

# Հայկ ՌԱՀԱՆՅԱՆ

Ծնվել է Աբխազիայում անցյալ դարի առաջին կեսին: Ուսանել է Երևանի ռուսական մանկավարժական ինստիտուտում, ապա նաև՝ Սուխումի մանկավարժական ինստիտուտի պատմական մասնաճյուղում: Եղել է ուսուցիչ և համամիութենական «Գիտելիք» ընկերության դասախոս: Այցելել է արտասահմանյան մի քանի երկրներ: Հրատարակել է առակների երկու ժողովածու: Չնայած տարիքին, Հայկ Ռահանյանը այժմ զբաղվում է գործարարությամբ և հնդկեղեգներից պատրաստած սրինգներով ոտի տակ է առել սևծովյան լողափազանները Նոր Աֆոնից մինչև Անապա՝ զրնգացնելով հայկական և ռուսական հոգեպարար մեղեդիներ:

Հույսով է, որ իր հարյուրամյակին կտպագրի երրորդ ժողովածուն: Նմուշներ ենք ներկայացնում ապագա գրքից:




## ԱՌԱԿՆԵՐ

### ՍԱՌՈՒՅՑՆ ՈՒ ՋՈՒՐԸ

Սառույցը ջրին մի անգամ հեգնեց.
– Ջուր, անսանձ հեղեղ ու աղետ ես մեծ,
Իսկ ես ապրում եմ հանգիստ ու խաղաղ
Համայն աշխարհի ծալքերում այս պաղ:

- Սառույց, դու զուր ես
Քարկոծում ինձ վես,
Չէ՞ որ ամենուր՝ այսպես, թե այնպես,
Դու էլ խոժ ջուր ես՝ սառն ու պնդերես:

### ՃԱՀԻՃՆ ՈՒ ԱՂԲՅՈՒՐԸ

Ճահիճը թե՝ այ աղբյուր,
Դու միշտ ջինջ ես ու մաքուր,
Ես՝ պղտոր եմ ու նեխված...
Եվ աղբյուրը հեզ ասաց.
– Ճահիճ, զուր ես նմխվում.
«Հոսող ջուրը չի նեխվում»:

### ՇՈՒՆՆ ՈՒ ՏԵՐԸ

Մի ժլատ շանը նախատեց այսպես.
– Ես եմ գնել քեզ
Դու խոժ իմ շունն ես,
Բա քո արարքից դու չե՞ս ամաչում,
Գնում ուրիշի դռանն ես հաչում:
Ամո՛թ է, չանես էլ այդպիսի բան:
Շունը տիրոջը տվեց պատասխան.
– Տեր իմ, հասկացիր, ես հիմար հո չե՞մ,
Որտեղ հաց կտան, այնտեղ կհաչեմ:

### ԱՍՈՒՄ ԵՆ...

Ասում են, իբր, գիտությամբ հզոր
Այս հողագնդի կես միլիարդ մարդկանց
Բյուր երակներում հոսում է այսօր
Մեր սուրբ հայկական արյունը նախնյաց:

Վարկածը այս մեծ չի ժխտում ոչ ոք,
Թեև մեր գոյը եղել է դժվար,
Եվ հայոց արյամբ պարզվել է, իրոք,
Նոր հանճարներ են գալիս այս աշխարհը:

*Հայկ ՌԱՀԱՆՅԱՆ*
*Դագոմիս*

Պղնձագործն ու երկաթագործն միմյանց խնամի դառնալու ժամանակ վիճեցին, յուրաքանչյուրն իր արհեստն էր գովաբանում մեծաբարբառ, և նրանց մեջ հակառակություն ընկավ. գնացին ծերերի ատյանը: Ծերունիներն ասացին, թե հասարակաց օգտակարը պատվական է:

*Մխիթար ԳՈՇ*

# Նամակ խմբագրությանը

Ռուսաստանի գրախանութներում հայկական գրքեր չեն վաճառվում: Եվ որպեսզի գրական մայրենին թարմ մնա մեր լեզվին, ուրախությամբ դիտում ենք Երևանի հեռուստաալիքները, առնչվում մայր հայրենիքում տեղի ունեցող իրադարձություններին, մեղմում հոգու կարոտը: Ինչպես ռուսներն են ասում «получаем полезное с приятным». Սակայն կապույտ տեսաշրջանակներից լսում ենք հաճախ աղավաղված հայերեն: Ես հինգ տարի ուսանել եմ Երևանում: Այն տարիներին այսօրվա ցնցող աղավաղումները չկային: Հաղորդավարների, գիտնականների, մշակույթի ներկայացուցիչների բերաններից հնչում է՝ բերում **Ա**, գերում **Ա**, գալիս **Ա**, գնում **Ա**, մնում **Ա**, ուզում **Ա**, կարամ, այլ ու այլ բայեր, օժանդակ **է** բայը դարձնում են **Ա**, որը ավելի շուտ հոդակապ է: Նման խոսակցական լեզուն անհանդուրժելի է լսողների, մայրենի գրական հայերենը գնահատողների համար: Եթե Հայաստանում նման լեզվով են արտահայտվում, ապա արտերկրում ծնված և ապրող հայրենակիցներս ինչպե՞ս մնան նվիրյալ մայրենի անաղարտ լեզվին:

*Սիրավան ՍԵՎՈՒՆԻ*
*Ռուսաստան, Լազարևսկ*

## ԳՆՈՒՄ ա, ԳԱԼԻՍ ա

Կարոտն էր պոռթկում Գաբեղի հոգում
Եվ աճապարեց Հայաստան գնալ,
Ուսում էր առել նա հայոց երկրում,
Մայրենին գիտեր ջրի պես զուլալ:

Որքա՛ն զարմացավ համշենցին, իրոք,
Երբ անհամ բառեր լսեց ամենուր,
Օժանդակ բայով չէր խոսում ոչ ոք,
Է-ի փոխարեն Ա-ն էր ընդհանուր:

Նույնիսկ էկրանից մարդիկ գիտնական
Եվ դերասաններ փառքի վաստակով,
Է-ի փոխարեն ասում էին Ա-ն,
Ուստի նա ապշեց ամբողջ հասակով:

Միշտ աղավաղված բառերի շարան.
Ասեմ՝ ես կարամ, բայց դու էլ կարա՞ս,
Այսպես է խոսում անգամ պաշտոնյան -
Գնում Ա լսես, ո՞նց չզարմանաս:

Ուղեղում այնքա՛ն Ա-եր զնգացին,
Որ գլուխն առավ, հապճեպ հետ փախավ,
Է-երը, ախպեր, այդ ուր մնացին,
Որ Ա-յերով են բայերը, ավաղ:

Լեզվաբան այրե՛ր, ինչո՞ւ եք լռել,
Խեղաթյուրում են լեզուն մեսրոպյան,
Հայոց սուրբ լեզուն դարերն են կռել,
Ո՞վ է մեր լեզվին լինելու պաշտպան:

21 դեկտեմբերի, 2012 թ.

## Ի՞ՆՉ ԵՍ ԱՆՈՒՄ, ՀԱՅԱՍՏԱՆ

Ի՞նչ ես անում, Հայաստան,
Նոր լեզու ես ստեղծում,
Հայոց լեզուն պատվական
Այդ ինչո՞ւ ես դու կեղծում:

Քո էկրանից կապտաչինջ
Զավակներդ դերասան
Հրամցնում են լեզվախիճ
Ելույթներում այս ու այն:

Ի՞նչ նայում Ա, բերում Ա,
Աղավաղված լեզու Ա,
Բարեհնչուն Է-ն ու՞ր Ա,
Մի՞թե լեզուն մեր այս Ա:

25 փետրվարի, 2013 թ.

# ՍԻՐԱՎԱՆ ՍԵՎՈՒՆԻ
## (Վլադիմիր Վարդանյան)

Ծնվել է անցյալ դարի առաջին կեսին՝ Մայկոպի շրջանի Կուժորսկոյե ստանիցայում: Մանկուց մնացել է տատի խնամքին: Պատանեկան տարիներն անցել են Աբխազիայում: Ավարտել է Օչամչիրայի շրջանի Հայկական Աթարա գյուղի Միքայել Նալբանդյանի անվան միջնակարգ դպրոցը: Դեռևս դպրոցում սովորելիս թղթակցել է Վրաստանում և Աբխազիայում լույս տեսնող հայկական, ռուսական, աբխազական և վրացական, հետագայում նաև զինվորական թերթերին: Սովետական բանակում ծառայելուց հետո աշխատել է Սուխումի կաշվի-կոշկի կոմբինատում որպես բանվոր: Ավարտել է Երևանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետի լրագրության բաժինը: Եղել է մայրենի լեզվի և գրականության դասատու, վրացռադիոյի հայկական հաղորդումների խմբագրության արտահաստիքային թղթակից՝ Աբխազիայում: 1975 թ. հունիսին կուսակցության Աբխազական մարզկոմի բյուրոն հաստատել է նրան Աբխազական ինքնավար հանրապետությունում «Սովետական Վրաստան» թերթի սեփական թղթակից և մասնագիտությամբ աշխատել է մինչև վրացաբխազական պատերազմը:

Սիրավան Սևունին հայերեն և ռուսերեն բանաստեղծությունների և պատմվածքների 15 գրքի հեղինակ է, տպագրվել է Բեյրութում, Լոս Անջելեսում, Կալուգայում, Մոսկվայում, Ռոստովում, Թբիլիսիում, Երևանում և Կրասնոդարում լույս տեսնող թերթերում և հանդեսներում, հայ գրողների Միության և ԽՍՀՄ լրագրողների Միության անդամ է, նաև ՌԴ տիեզերագնացության Ֆեդերացիայի Պատվավոր անդամ, պարգևատրվել է տիեզերքը նվաճողների մեդալներով և Գագարինի անվան Պատվոգրով: Հանդիսանում է «Համայնապատկեր» (ԱՄՆ) հանդեսի հատուկ թղթակիցը Ռուսաստանում:

Սիրավան Սևունու գրչին հարազատ է քնարերգությունը և հումորը:

***Հայկազ ՕՀԱՆՅԱՆ,***
*«Նոր լույս» գրական միավորման նախագահ*

## ԱՍՏՂԱՅԻՆ ԵՐԿԻՆՔ

Հաշտվել եմ ուզում տխուր բախտիս հետ,
Մոռանալ անգամ նվաստում ու վեճ,
Գնալ հեռուներ, գտնել արահետ,
Ապրել մեն-մենակ գազանների հետ:

Մտերիմ լինել արջին, աղվեսին,
Գուցե հաշտ ապրենք, հասկանանք իրար,
Քան թե մի կնոջ նայել երեսին,
Հայացքը տեսնել տհաճ, դիվահար:

Չեմ սիրել երբեք ես անմիտ կանանց,
Որոնք անարժան՝ իրենց են գովում,
Կոպիտ են վարվում կողակից մարդկանց
Եվ արժանիքը իզուր փնովում:

Երանի՛ նրան, ով կապրի խոհեմ
Կանացի, հանգիստ, ազնիվ կնոջ հետ,
Նման տիրուհուն ինչպե՞ս չգովեմ,
Որ նվիրյալ է սիրուն առհավետ:

Անուրջների մեջ զարուն է ծաղկում
Երկուստեք սիրո համադրությամբ վես,
Եվ վառվող աստղերի դռները թակում,
Որ անմար մնա սերը բոցակեզ:

Կարոտ է սիրտս նման անդորրի
Յարոտ իղձերիս որպես ավետիք,
Անսա տենչանքիս, իմ սիրո փերի,
Միասին թռնենք աստղային երկինք:

5 փետրվարի, 2013 թ.

## ԳԱՐՈՒՆ

Զարթոնքի բոցով
Գարունն ավետվեց,
Արեգի շողով
Ծառս կանաչեց:

Աղավնիս եկավ
Ճյուղերիս թառեց,
Յարս սրտացավ
Վիշտս փարատեց:

Թե կանաչ լինեն
Ծառերն աշխարհում,
Սերեր կծաղկեն
Վհատ սրտերում:

22 հունվարի, 2013 թ.

## ՀԱՎԵՐԺ ՍԵՐ

Սերդ իմ սրտում,
Այնպե՛ս է մրրկում,
Այս լույս աշխարհում
Ո՞նց եմ դիմանում:

Հյուլեի նման
Գիտեմ, ես կայրվեմ,
Սերդ հավիտյան
Ինձ հետ կտանեմ:

18 հունվարի, 2013 թ.

# Ամենայն Հայոց Կաթողիկոսի՝ խեղդամահ սպանությունը

1938 թ Հայաստանեայց Եկեղեցւոյ սուրբ կեդրոն Ս. Էջմիածնի մէջ, հայ չեկիստներ խեղդամահ սպաննեցին Ամենայն Հայոց Խորէն Ա. Մուրադբէգեան (Տփղիսեցի) Կաթողիկոսը:

Վերջին 20 – 25 տարիներուն, Արցախեան Ազատամարտի ժայթքումէն եւ Հայաստանի անկախութեան վերականգնումէն ասդին, պետական արխիւներու ազատ հրապարակման պայմաններուն մէջ, տակաւ կը բացայայտուին մութ ծալքերը Ամենայն Հայոց Կաթողիկոսի տմարդի այդ սպանութեան անլուր ողբերգութեան:

Երկար տասնամեակներ խորհրդային աղբիւրները լռութիւն պահեցին Հայոուն Հաւատքը խաչելու չեկայական այդ սրբապղծութեան դէմ: Պաշտօնապէս քողարկեցին ճշմարտութիւնը եւ փորձեցին մութի մէջ պահել պատմական այն ահաւոր փաստը, որ հայ ժողովուրդի հոգեմտաւոր գլխատման Ստալինեան տխրահռչակ մաքրագործումներու ծիրէն ներս, Խորէն Ա. Տփղիսեցիի խեղդամահ սպանութիւնը հանդիսացաւ 1930-ականներու երկրորդ կիսուն գործուած խորհրդայիններու մեծ ոճիրին ծանրագոյն արարներէն մէկը:

Միայն սփիւռքեան մամուլի էջերուն եւ որոշապէս Դաշնակցութեան մօտ կանգնած շրջանակներու կողմէ օրին մերկացուեցաւ գործուած սրբապղծութիւնը: Որոշապէս ատենի Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան Ատրպատականի թեմի առաջնորդ Ներսէս Արք. Մելիք-Թանգեանին կողմէ բացայայտուեցաւ, որ 10 Ապրիլ 1938-ի լուսցող գիշերը, չեկիստներ մուտք գործած էին Խորէն Ա. Մուրադբէգեանի Ս. Էջմիածնի ննջասենեակը եւ իր սնարին մէջ խեղդամահ ըրած Հայոց Վեհափառը:

Դաժան ժամանակներ էին. Խորհրդային Միութիւնը երկաթէ վարագոյրներով աշխարհէն կտրուած մեծ ճամբար մըն էր. նոյն ճակատագրին ենթարկուած էր Խ. Միութեան լուծին տակ ինկած Խորհրդային Հայաստանը եւս, ուր թափանցելու եւ երկաթէ վարագոյրի ետին կատարուող բռնութեանց մասին քաղաքակիրթ աշխարհը իրազեկելու կամ լուսաբանելու անյաղթահարելի դժուարութիւն կը դիմագրաւէին հաղորդակցութեան եւ զանգուածային լրատուութեան ոչ միայն խորհրդային, այլեւ արտասահմանեան միջոցներն ու մամուլը:

Նման տեղեկատուական շրջափակման պայմաններուն մէջ, խորհրդայինները բնական մահուան վերագրեցին Խորէն Առաջին Մուրադբէկեան Վեհափառի վախճանումը: Այդպիսով ալ թերեւս փակուէր թղթածրարը: Բայց որովհետեւ նոյն շրջանին խորհրդայինները ձեռնարկած էին տասնեակ հազարաւոր պարսկահպատակներ զանգուածաբար Հայաստանէն վտարելու քայլին, անոնց շարքին դնելով պարսկահպատակ հայերը եւս, ակամայ արտօնած եղան նաեւ տեղեկութեանց անհակակշռելի հոսքը դէպի արտասահման: Թաւրիզ հասնող պարսկահայ վտարանդիները ականատեսի եւ



ականջալուրի իրենց վկայութիւնները փոխանցեցին Ատրպատականի Հայոց Առաջնորդ Ներսէս Արք. Մելիք-Թանգեանին:

Իսկ Հայաստանեայց Եկեղեցւոյ քաջարի այդ հովիւը նման սրբապղծութիւնը ո չ ներողն էր, ոչ ալ այդ մասին լուռ մնացողը...

Շուտով Փարիզի մէջ հրապարակուեցաւ եւ սփիւռքահայ բոլոր հայօճախներուն մէջ անմիջապէս արձագանգ գտաւ Ամենայն Հայոց Հայրապետի նահատակութեան գոյժը:

Կատարուածը քաղաքական ոճիր էր, ըստ էութեան պետական ահաբեկչութիւն:

Ստալինի եւ Բերիայի մականին տակ շարժող խորհրդային ղեկավարութիւնը, ինչպէս գերեվարուած այլ ազգերու պարագային, նաեւ հայ ժողովուրդի եւ Հայաստանի նկատմամբ փորձեց եւ ամէնէն բիրտ միջոցներով՝ անընդհատ առաջ քշեց խորհրդայնացմա՛ն իր քաղաքականութիւնը: Շարունակ փորձեց Հայաստանի եւ հայութեան մէջ գտնել ինչ-որ «ազգայնական», «պուրժուա» եւ մանաւանդ... «դաշնակիստ» բան մը, որուն արմատախիլ մաքրագործումը պետական եւ, այսպէս կոչուած, կուսակցական իր շահերուն գերագոյն առաջնահերթութիւնը հռչակեց:

Քաղաքական եւ հասարակական այդօրինակ մոլեգնութեան հետեւանքով էր,ահա՛, որ խորհրդայինները դիմեցին նաեւ Հայոուն Հաւատքը խաչելու քայլին Ամենայն Հայոց Ազգընտիր Կաթողիկոսը խեղդամահ սպաննելու սրբապղծութեան:

Առանձնակի դրուագ մը չեղաւ Խորէն Ա. Մուրադբէկեանի սպանութիւնը: Ջայն կանխեցին ոչ միայն քանդումն ու սրբապղծութիւնը Երեւանի թէ շրջաններու հայկական եկեղեցիներուն, այլեւ հարիւրներով ձերբակալութիւնն ու տասնեակներով գնդակահարութիւնը գործող հայ եկեղեցականներու:

Քրեմլին որոշած էր խորհրդային աշխարհի տարածքին վերջ տալ Եկեղեցւոյ գոյութեան միայն խորհրդանշական կեդրոններու գոյատեւումը արտօնելով, այն ալ պայմանաւ, որ անոնք ամբողջապէս խորհրդային քաղաքականութեան հլու-հնազանդ ու կամակատար սպասարկութիւնները դառնային:

Քաղաքակրթութեան ճակտին ամօթի խարան դարձած խորհրդային այդ քաղաքականութեան զոհ գնաց եւ Հայաստանեայց Եկեղեցւոյ Նահատակ Հայրապետը եղաւ Խորէն Ա. Մուրատբէկեան:

Այսօր արդէն հայրենաբնակ հայութիւնը եւս արժանին կը մատուցանէ Նահատակ Հայրապետին: Ինչպէս Ս. Էջմիածնի Արխիւներուն, նոյնպէս եւ Հ.Հ. Պետական Արխիւի պատասխանատուներուն կողմէ տակաւ լուսարձակի տակ կը բերուին Նահատակ Հայրապետին եղերական վախճանին մանրամասնութիւններն ու ծալքերը:

Նաեւ արխիւային նիւթերով ամբողջացած է ազգային դէմքը Խորէն Ա. Մուրադբէկեան Կաթողիկոսի, իբրեւ Ազգի եւ Հայրենիքի արժանաւոր Քաջ Հովիւի, որ խիզախաբար ընդդիմացաւ խորհրդային ճնշումներուն եւ, կեանքի գնով, մինչեւ վերջին շունչ մերժեց տեղի տալ խորհրդային կայսերապետութեան ծառայելու պարտադրանքին առջեւ:

Ալեքսանդր Յովհաննէսի Մուրադբէկեան էր աւազանի անունը հայոց Նահատակ Հայրապետին: Ծնած էր 8 Դեկտեմբեր 1873-ին, Թիֆլիս: Աւարտած էր տեղւոյն Ներսիսեան վարժարանը եւ բարձրագոյն ուսման հետեւած էր Զուիցերիոյ համալսարաններուն մէջ: 1897-ին, վերադառնալով Թիֆլիս, երգի ուսուցիչ կարգուած էր Ներսիսեան վարժարանին մէջ: 1901-ին ձեռնադրուած էր սարկաւագ, ապա նոյն տարուան Դեկտեմբերին աբեղայ:

Ազգային-հոգեւորական քաջ հովիւի ծառայութիւն մը եղաւ Խորէն Առաջինի եկեղեցական ողջ գործունէութիւնը: 1902-ին վարդապետ ձեռնադրուեցաւ Խրիմեան Հայրիկի կողմէ եւ Յունիս 1903-ին, երբ վրայ հասան հայոց եկեղեցապատկան կալուածներու բռնագրաւման ցարական հրամանագրի դժուար օրերը, Խորէն Վարդապետ առաջիններէն եղաւ, որ գլուխը կանգնեցաւ հայոց համաժողովրդական ըմբոստացումին: Իր այդ գործունէութեան համար ձերբակալուեցաւ ցարական իշխանութեանց կողմէ եւ աքսորուեցաւ Ռուսաստանի Օրեոլ քաղաքը

1905-ին վերադարձաւ աքսորէն եւ վերանորոգ թափով լծուեցաւ հոգեւորական ծառայութեան: 1907-ին, Խրիմեան Հայրիկի կոնդակով, Խորէն Վարդապետ ընդհանուր բարեկարգիչ նշանակուեցաւ Նոր Պայազէտի եւ Ծաղկաձոր շրջանի հայկական եկեղեցիներուն եւ իր ծաւալած ազգայինհոգեւորական անձնուէր գործունէութեան առ ի գնահատանք Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ 1909-ի դեկտեմբերին:

Առաջին Աշխարհամարտին, հայ կամաւորական գունդերու վիրաւոր զինուորներուն եւ արեւմտահայ գաղթականներուն հոգատարութեան փութացող Երեւանի Թեմի Եղբայրական Օգնութեան Յանձնաժողովի նախաձեռնողն ու նախագահը եղաւ: 1917-ին վճռորոշ դեր կատարեց Երեւանի Հայ Ազգային Խորհուրդի ստեղծման եւ գործունէութեան մէջ, մեծ նպաստ բերելով Հայաստանի անկախութեան կերտման հերոսամարտերուն մեր ժողովուրդի ոգեւորման գործին:

Համազգային պատասխանատուութեան

⊃11

10⊃

ոգիով սնած ու գործած հեղինակութիւն էր արդէն Խորէն Եպիսկոպոս Հայաստանի Հանրապետութեան շրջանին: Իր այդ հանգամանքով ալ առաքուեցաւ Փարիզ, որպէսզի մերձեցում եւ համերաշխ գործակցութիւն առաջացնէր Խաղաղութեան վեհաժողովին հայկական պահանջները ներկայացնող հայկական զոյգ՝ Աւետիս Ահարոնեանի եւ Պօղոս Նուպար փաշայի գլխաւորած պատուիրակութեանց միջեւ:

1920-ի դեկտեմբեր 11-ին, օրուան Ամենայն Հայոց կաթողիկոս Գէորգ Ե. Սուրէնեանցի կոնդակով, Խորէն Եպիսկոպոս արժանացաւ Արքութեան տիտղոսին, իսկ 1923-ի մարտ 4-ին ընտրուեցաւ Ս. Էջմիածնի Հոգեւոր Գերագոյն Խորհուրդի նախագահ եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսի տեղապահ:

Խորհրդային կարգերու հաստատման առաջին տարիներէն իսկ, Խորէն Արքեպիսկոպոս բուռն պայքար մղեց Հայաստանեայց Եկեղեցւոյ դէմ կատարուող պոլշեւիկեան ոտնձգութեանց դէմ: Հակառակ իր դէմ ծաւալած հետեւողական հալածանքներուն, իր վայելած անբասիր հեղինակութեամբ, Խորէն Արքեպիսկոպոս կրցաւ դիմագրաւել ամէն կարգի ճնշումները եւ 1932-ին, երբ նաեւ օրուան իշխանութեան ղեկավար Աղասի Խանջեանի հետ սերտ գործակցութիւն հաստատած էր ի նպաստ Հայաստանեայց Եկեղեցւոյ պահպանման եւ պաշտպանութեան, Գէորգ Ե. Կաթողիկոսի վախճանումէն ետք Խորէն Առաջին Մուրադբէգեան ընտրուեցաւ Ամենայն Հայոց Կաթողիկոս:

Բայց խորհրդային խորշակը ոչ մէկ սրբութիւն կը ճանչնար եւ Աղասի Խանջեանին հետ «կերաւ» գլուխը նաեւ հայոց ազգընտիր կաթողիկոսին:

Անշուշտ Քրեմլինի հաշիւները շատ անդին կ՚երթային Խորէն Առաջին Հայրապետի կամ Աղասի Խանջեանի անձերէն եւ անոնց ներկայացուցած ազգային ընդդիմադրութենէն: Քրեմլինի համար ամբողջ խորհրդային տարածքին եկեղեցին դատապարտուած էր քայքայման ու անհետացման, ինչպէս որ ազգերը պէտք է անհետանային աստիճանաբար: Հայաստանեայց Եկեղեցւոյ պարագային կար, սակայն, նրբերանգային այն նկատառումը, որ Ս. Էջմիածինը կը հանդիսանար տարագիր հայութեան հոգեւոր կեդրոնը եւ, իբրեւ այդպիսին, կրնար օգտակար զէնք մը դառնալ խորհրդային արտաքին քաղաքականութեան ձեռքին՝ արտասահմանեան երկիրներու մէջ խորհրդային ազդեցութեան տարածման ի սպաս տեղական լծակներ ապահովելու ուղղութեամբ: Հետեւաբար, հարկ էր Խորէն Առաջինի օրինակով հոգեւորականները գլխատել Հայաստանեայց Եկեղեցին, որպէսզի Չեկայի դրածոյ կղերով Քրեմլին կարենայ իր արտաքին քաղաքականութեան հաշւոյն օգտագործելի զէնքի վերածել Ս. Էջմիածինը: Խորհրդային այդ դաժան քաղաքականութեան դառնագոյն գինն էր, որ Խորէն Ա. Մուրատբէկեան Կաթողիկոս վճարեց իր կեանքով:

Հակառակ անոր, որ Էջմիածնի «գլխատման» Չեկայի գործողութեան մասին խորհրդայինները հետեւողականօրէն լռութիւն պահեցին եւ Հայոց Հայրապետին մահը բնական պատճառներու վերագրեցին, այսուհանդերձ՝ չկրցան լռութեան մատնել սրբապիղծ «Հայրասպանութիւնը» բացայայտելու Մեհք-Թանգեան Արքեպիսկոպոսին նոյնքան եւ աւելի հետեւողական, այլեւ յանդուգն ու անվեհեր ձայնը:

Հետեւանքը եղաւ, յատկապէս սփիւռքի տարածքին, հայ ժողովուրդի ներքին պառակտումին խորացումը:

Խորէն Կաթողիկոսի վախճանումը բնական պատճառներու վերագրող խորհրդային քարոզչութեան կամակատար հետեւորդները, Սփիւռքի տարածքին, հակադաշնակցական պայքարի սաստկացման նոր շարժառիթ մը գտան: Նոյնիսկ Ս. Էջմիածնի մէջ 10 ապրիլ 1938-ին գործուած սրբապիղծ ոճրագործութիւնը բացայայտող ու դատապարտող Ատրպատականի Հայոց Էջմիածնական Առաջնորդին հետեւողական պնդումները հռչակեցին «դաշնակցական յերիւրանք»:

Իսկ Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը փաստօրէն մնաց թափուր աւելի քան ութ տարի: Խորհրդայինները Կաթողիկոսական Տեղապահ նշանակեցին Գէորգ Չէօրէքճեան Սրբազանին, բայց ո՛չ կրցան Ազգային Ընդհանուր Ժողով գումարել, ոչ ալ համախոհութիւն առաջացնել իրենց կաթողիկոսական այդ թեկնածուին շուրջ:

Հայութեան պառակտումը շարունակուեցաւ նաեւ Երկրորդ Աշխարհամարտի աւարտէն ետք, երբ աշխարհաքաղաքական նոր պայմաններէն օգտուելով Քրեմլինի վարիչները ի վերջոյ կրցան, Գէորգ Զ. Կաթողիկոսի ընտրութեան համար, Ազգային Ընդհանուր Ժողովը գումարել տալ: Պառակտումը այնուհետեւ ալ շարունակուեցաւ, մինչեւ որ յանգեցաւ 1956-ի Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսական ընտրութեանց նախօրէին, ընթացքին եւ յետոյ թափ առած ներհայկական բուռն, մինչեւ իսկ եղբայրասպան արիւնահեղութեամբ բորբոքած պայքարին:

*«Ազատ օր» օրաթերթ*

*Նյութը պատրաստեց Ք. Ա.-ն*

Ո՛վ հայրեր, ո՛վ պապեր, այս գավաթը խմում եմ, բայց առանց նվիրելու ձեր ոսկորներին: Եթե դուք այս վանքերի տեղը, որոնցով լիքն է մեր երկիրը, բերդեր շինեիք, եթե դուք սուրբ խաչերի և անոթների փոխարեն, որ սպառեցին ձեր հարստությունը, զենքեր գնեիք, եթե դուք այն անուշահոտության տեղ, որ խնկվում են մեր տաճարներում, վառոդ ծխեիք, այժմ մեր երկիրը բախտավոր կլիներ: Մեր երկիրը չէին քանդի, մեր որդիքը չէին կոտորվի և մեր կանանց չէին հափշտակի... Վանքերից ծագեց մեր երկրի կործանումը, նրանք խլեցին մեր սիրտը և քաջությունը, նրանք ձգեցին մեզ ստրկության մեջ, սկսած այն օրից, երբ Տրդատը թողեց իր սուրը և թագը, վերցրեց խաչը և մտավ Մանյա այրը՝ ճգնելու... Ո՛վ Հայոց հին աստվածներ, ո՛վ Անահիտ, ո՛վ Վահագն, ո՛վ Հայկ, նվիրում եմ այս բաժակը Ձեր սուրբ հիշատակին, դուք փրկեցեք մեզ...

**Դալի-Բաբայի ճառը – Րաֆֆի**

# Նորօրյա աղոթք

Արդեն 10 տարի, 110 տարի, 1010 տարի
Ես վախենում եմ՝ շա՛տ եմ վախենում
Բյուրավոր ու բո՛ւթ հավատացյալից,
Բյուրատեսք ու սո՛ւտ հավատացյալից:

Եթե աստված եք,
Փչեցե՛ք նրանց բոլո՛ր մոմերը,
Մարեցե՛ք նրանց կանթեղներն ամե՛ն,
Հանգցրե՛ք նրանց ջահերն այլազան,
Որ եղիցի լո՛ւյս...
Եվ ո՛չ մի գավթում մի՛ ընդունեցեք
Նրանց մատաղը,
Որ իրենցը չէ՛, այլ գողացվա՛ծ է:
Մերժեցե՛ք նրանց զոհն էլ խոստացյալ,
Որ զոհ չգնա ի՛նքը՝ հավա՛տը՝
Մաքուր վսեմը, անկեղծ անսո՛ւտը:

Ու թե աստված եք, ամո՛ւր փակեցե՛ք
Ձեր ականջներն էլ
Նրանց սողոսկուն աղոթքի դիմաց՝
Անգիր, ինքնահոս,
հաշվեկշռված այն աղոթքների,
Որով խաբում են ո՛չ իրենց, այլ ձե՛զ:
Եվ բավակա՛ն է,
հասկացե՛ք ընդմիշտ,
Որ աստծուն նույնիսկ հայհոյողները
Շա՛տ ավելի են գերադասելի,
Վասնզի նրանց բարկացրել է
Ի՛նքը՝ հավա՛տը՝
Խոցված, արյունոտ,
Այրվող, ապտակված,
Ցաված, ճչացող
Մանուկ հավա՛տը,
Որ հա՛յր դառնալու համար է ծնվել:

Ու եթե հա՛յր եք, մի՛ թողեք,
Որ սուտ հավատացյալներն
Ըսպանեն նրան:

Ինչքան էլ ծանր է մանուկ պահելը,
Մանուկ թաղելը ծա՛նր է ավելի՛:

*Պարույր ՍԵՎԱԿ*

Ոսկին թագավորելիս պահանջում էր, որ բոլոր նյութերը երկրպագեն իրեն: Նա թագավոր էր կոչում իրեն, որովհետև թագավորի պատկեր է եղել, և դրանով ամբարտավանում էր արծաթագործներին և ուրիշների վրա ևս: Բոլորը եկան երկրպագելու, բայց ցորենը չեկավ, ասելով. «Թող առաջ ինքը՝ ոսկին գա ինձ երկրպագելու»:

*Մխիթար ԳՈՇ*

Եղիշե ՉԱՐԵՆՑ

**Այդ մե՛նք ենք երևի այն ուղտը հաստակող,**
**Որ Հիսուսի առակին հակառակ –**
**Պիտի մտնենք՝ անգամ ասեղի նուրբ ծակով՝**
**Ապագայի դրախտը անարատ...:**

# Պատմության քառուղիներով

Պատմության քառուղիներով
մենք քայլել ենք երկար՝
Անղեկ, ցաքուցրիվ, անգաղափար,
Հին դարերից մինչև այս հանճարեղ ներկան,
Որ հուրհուրատում է մեր դեմ գալիքնափայլ:
Այն անգո առավոտից, երբ լեգենդական
Իր խարույկն է վառել մեր անգո նախահայրը,
Այս Մասիսի հանդեպ, այս անիրական
Արարատյան դաշտում, – որպես
զրույց անծայր մի
Տարածվել է ուղին մեր անպատմելի,
Անծայրածիր ձգվել դարերով ձիգ
Եվ գնում է այսօր ու երկարվում էլի
Դեպի ի՛նչ անհայտ ափեր ու գալիքներ անծիր...

Բայց ուղին մեր եղել է մի՛շտ մթին,
Եղել է անստույգ ու անփառունակ,
Տարածվել է անբոց ու անժպիտ՝
Ուրիշների փայլով շքրունակ,
Շառագունված – որքա՛ն, որքա՛ն աղետավոր...
Որպես անմիտ զրույց՝ մեզ պատմել են մի օր
Նախնիների մասին մեր փառապանծ,
Բայց օրերի հեռվում ես տեսնում եմ միայն
Ստրկություն, մոխիր, մոռացություն ու մահ
Եվ երկրային ընթացք մի անիմաստ...
Եվ ես, ահավասիկ, հին գրերով այս մեր
Իմ տողերը կոփող մի պոետ –
Ի՛նչ խոսքերով երգեմ և ինչ տենդով պատմեմ
Մեր անանցյալ անցյալը, մեր ընթացքը, որ էլ
Ո՛չ մի գուսան երգով չոգեկոչի հին փառքը
Ու կարոտով անմիտ ետ չնայի, –
Չպանծանա այլևս, որ առանց մեզ աշխարքը
Կլիներ պարտեզ մի ամայի...
...
...
Պատմության քառուղիներում
առաջնորդել են նախ
Մեզ նախնիներ անստույգ ու ոչնչատեսիլ,
Մռայլ հեռուներում անճանապարհ առկախ,
Որ իրենց մորթի հետ միասին
Տարել են բախտը մեր թավալգլոր
Երկրներից երկիր, – օ, տառապանք երկար, –
Նշել են մեզ համար ուղի աղետավոր,
Եվ տոտեմը եղել է մեր – գայլ...
Օ՛, նախնինե՛ր... Տեսնում եմ ահավասիկ. –
Հին դարերի խորքում, ուղիներով մռայլ,
Քաղցած, քոսոտ, անբուրդ, դեպի լյառը Մասիս
Քայլում է առասպելյալ մեր գայլը...
Հենց առաջին օրից բզկտված են նրա
Նիհար կողերը – բյուր գազանների կողմից, –
Եվ կողերով կարմիր ահա քայլում է նա՝
Դեմքը տված գալիք փորձանքների հողմին: –
Որտեղի՞ց է եկել նա, այդ գայլը,
Եվ ինչո՞ւ է արդյոք նա առաջին օրից
Սարսափահար հայացքը հառած լուսնի փայլին՝
Աղեկտուր ոռնում իր սարսափը խորին:
Եվ նա գիտե՞ արդյոք, այդ բզկտված գազանը,
Որ նշված է արդեն նրա ուղին
Ապագայի գրքում, – որ տարիներ հազար
Քայլելու է այդպես անուղի, –
Որ պատմության մռայլ քառուղիներում
Նա բազմաթիվ դարեր պիտի այդպես տանի
Իր բզկտված կողերը – դեպի ի՛նչ անհայտ հեռու,
Ի՛նչ արոտներ կարմիր ու արնանիստ...
Օ, չի եղել մեր գայլը պղնձյա
Եվ ոչ մարմարիոնյա, և ոչ անգամ քարե, –
Նիհար, կողերը լերկ, նա անցել է անծայր
Տափաստաններ, մինչև նա հանգիստ է առել
Այս Մասիսի հանդեպ անիրական,
Այս խորշակյալ, անդուռ Արարատյան դաշտում,
Եվ՝ լուսնի դեմ նստած՝ նա երկար
Ռռնացել է իր վիշտը անկշտում, –
Ռռնացել է անձուկ իր տառապանքը,
Անասնական իր քաղցը, – և ոռնոցը նրա
Դարձել է հիմքը մեր անարձագանք –
Ու դարերով հնչել մեր պատմության վրա...
...
...
Ապա առաջնորդել են մեզ տարիներ երկար
Արքաներ անժողովուրդ և գահազուրկ,
Որոնց փառքը՝ մեր հին մատյաններում երգած՝
Եղել է եղկություն ու քծնություն քսու: –
Օ, դո՛ւք, մեր վաղեմի առաջնորդնե՛ր,
Առասպելյալ Հայկեր ու Տրդատներ բազում,
Իշխաններ անփառունակ, սին ըղձերի ճորտեր,
Արքաներ անժողովուրդ ու գահազուրկ, –
Դո՛ւք, որ դարեր երկար, հազարամյակներ,
Ուրուների նման անկերպարանք
Ապրել եք ու կանգնել օդե ապարանքներ,
Օտար խարույկներից հայցել ոգու կրակ, –
Որ ամբողջ ձեր գոյության հազարամյակներում
Չե՞ք ծնել և ո՛չ մի խոհ սերունդների համար –
Ո՞ր, ո՞ր պատմիչը ձեզ պիտի կարդա ներում,
Օ, դո՛ւք, անպտուղ պարտեզներ
ու խորաններ ամա...
...
...
Ապա առաջնորդել են մեզ տարիներ երկար
Ֆեոդալներ շվայտ ու իշխաններ չնչին,
Հազար երանգներով իրենց դեմքը ներկած, –
Եվ մեր անմահության ակունքները այն ջինջ
Պղտորել են ոխով ու ոչնչությամբ,
Չնչին տենչանքների անխոհությամբ ոսին,
Փաթաթելով վզին մեր մի ճորտային շղթա,
Սերմանելով մեր ողջ ժողովրդի մասին
Ոչնչության սերմեր, անխոհության,
Թշվառ անհողության և աղապատանքի,
Եվ դրել են դեմքին մեր կնիքը գերության,
Սնել թշվառ կաթով ապաշնորհ կյանքի...
...
...
Իսկ նրքա՞, որ եկել են իշխաններից հետո, –
Վերջին ասպետները մեր խեղճության խորին,
Սնված նախնիների անհողության կաթով, –
Օ՛, վարդապետ Մինաս, կամ Իսրայել Օրի, –
Այն ի՛նչ տենչեր են վեհ, ու անխորտակ ու խոր,
Որ սերմանել եք դուք երկրներում օտար,
Եվ ո՞ր, և ո՞ր, և ո՞ր նպատակի շողով
Զգտել եք կյանքը մեր անմխիթար
Հանել ափունքներից այն սև ու ապերջանիկ,
Նշել սերունդներին ուղի պայծառ, –
Եվ ձե՞զ պիտի արդյոք մենք երգենք հիմա –
Ձեր ո՞ր խոհին, կամ ո՞ր երազանքին անճառ...
...Ահավասիկ ելած մեր լեռներից այն բարձր,
Ուր վառվում էր հույսի մեր խարույկը վերջին,
Շուրջը – խավար գիշեր ու մառախուղ մի թանձր,
Շուրջը – ժայռեր մռայլ ու բարդիներ վերձիգ, –
Ու թանձրացյալ մուժում – ապարանքներ ահա՝
Փոքրիկ, ողորմելի, խեղճ –
Իրենց մութ պատերում մի բուռ ոսկի պահած,
Եվ ո՛չ մի, ոչ մի մեխ, –
Ո՛չ մի կտոր երկաթ, կամ անագե շաղախ,
Կամ մարմարյա մի սյուն, կամ թեկուզ կիր,
Որ փորձության պահին անձրևներից միար
Եվ իր ծուխը խառներ ըմբոստության երգին...

Ապարանքը – այսպես: – Իսկ ներքևում – խուղեր՝
Գետնափոր, ստորերկրյա, ցաքուցրիվ,
Թաղված գանգի պես խուլ, գանգի պես անուղեղ,
Կարծես մի խեղճ նախիր
Արածելու ժամին կայծակնահար՝ հանկարծ
Կըծկըրվել է ահից ու մոխրացել –
Եվ մնացել է տեղը մի մոխրաբույր զանգված՝
Դարերով անջրդի ու հողմածեծ...
Եվ նրքա – մեր անղեկ առաջնորդները,
Այդ իշխանները եղկ, այդ տերերը վերջին,
Ելել են գիշերով ու մենակ ճամփորդել են
Դեպի հյուսիս, դեպի հյուսիսային որջի
Արջերը սառցասիրտ ու արնաթաթախ,-
Այդպես մեր գա՛յլն էր հին ճանապարհվում որսի՝
Հյուծված, կողերը լերկ և անատամ...

Ես տեսնում եմ նոցա: – Իմ աչքերի առջև
Ահավասիկ իրենց եղկ հասակով ամբողջ՝
Իրենց խուլ խուղերից ու լեռներից այն բարձր
Ճանապարհ են ընկնում՝ անուղի ու անխոհ: –
Ելած որոնելու հորիզոններ, գալիք
Սերունդների համար արահետներ ուղիղ –
Ի՞նչ են տանում նրքա ուրիշներին տալու,
Այն ի՛նչ բերքեր երկրի ու բարիքներ հողի...
Այն ի՛նչ գանձեր արդյոք, ի՛նչ արգասիք ու բեռ,
Ի՛նչ ոսկիներ ոգու ու զորության…
Ո՛չ:- Տանում են նրքա, որպես շնորհ առձեռն,
Կարավաններ ահի ու թշվառության: –

Ելած որոնելու գալիքների շավիղ,
Ապագայի ընթացք ու հորիզոն –
Նրքա կրում են լոկ անանձնական ցավի
Ու հանգուցյալ փառքի մեռելային կավիճ՝
Հազարամյա մեր դեմքը երիզող…
Եվ անվավեր փառքի առասպելյալ փայլով
Շղարշելով խեղճությունն հազարամյա -
Միջնորդել են նրքա հյուսիսում ու այլուր՝
Ներքինատիպ, զազիր ու զառամյալ…
Խոստացել են նրքա իրենց երբեք չեղյալ
Փառապանծ անցյալի անունով -
Առաջնորդել նոցա Երկիրը Ավետյաց՝
Հանուն Որդու, Հոգու և հանուն Հոր…

⊃13

**12Ͻ**

...
...
Այսպես անցել ենք մենք անխոհ ու անգաղափար
Պատմության քառուղիներով, որպես միրաժ, –
Կտրել ենք երկար մի ճանապարհ
Եվ ճանապարհը մեր այս
Ե՞րբ է արդյոք, ե՞րբ է փայլատակել, օ, ե՞րբ,
Ե՞րբ է վառվել լույսով գալիքնափայլ, –
Եվ ո՞վ, և ո՞վ է մեր ապագային տվել
Անխզելի ընթացք ու գաղափար...
...
...
Իսկ նրանցից հետո ահավասիկ իմ դեմ
Մի ձեռք, որ զորություն է տալիս գրչիս –
Մեր պատմության գրքից դարձնում է մի թերթ
Եվ բացում է էջը նախավերջին, –
Եվ հանդես են գալիս – անկերպարանք անդեմ –
Երեկվա մեր տերերը չնչին: –
Օ, վաշխառու ճորտե՛ր, հացկատակնե՛ր, մթին
Սերմանողներ քամու ու մուրացկանության, –
Մեզ ժառանգած գանձի, օ, վատնիչներ հետին,
Որ ափերում հեռու ձեզ ապաստան գտած –
Կերտեցիք դղյակներ ու ապարանքներ,
Մեր անունից մրրիկ սերմանեցիք –
Եվ այսօրվա ձեր խեղճ ոչնչության անգետ
Վերջին խարիսխը մեր
Վաճառքի հանեցիք...
Եվ կործանվեց ձեր փառքը: – Ապարանքները ձեր
Միրաժների նման անպատի
Անէացան մի օր – և ո՛չ մի ձեռք
Չդրոշմեց ձեր հետքը պատմության ճակատին...
Որպես փոշի – անցաք, որպես քամի,
Եվ ո՛չ մի, ո՛չ մի մատյան
Չի նշելու երբեք ձեր ցնորքը անհիմն
Իր էջերում անջինջ ու անհատյալ…
Անէացավ ձեր փառքը: – Եվ այն, որ դեռ ունեք
Աշխարհի բոլոր հեռուներում –
Կկործանվի մի օր ամենուրեք
Եվ գալիք պայծառ օրերում
Ո՛չ մի գուսան երբեք իր երգերում հնչեղ
Չի կարդա նզո՛վք անգամ ձեզ,-
Դո՛ւք, որ միայն ոգու խեղճություն եք ցանել
Եվ գալիքում – տխուր մոռացություն հնձել...
...
...
Իսկ ժողովո՞ւրդը, որ եղել է հանճարեղ,
Եղել է որմնադիր, եղել է կառուցող,
Քաղաքներ է շինել, պարիսպներ է շարել,
Կամուրջներ է գցել կոր գծով, –
Որ դարերի միջով մինչև այգն այս հասած՝
Կրել է մեջքի վրա իր,
Օ՛, եղկելի տերե՛ր, զազիր ու բազմազան
Ձեր բռնությունը բիրտ...
Ունի՞ արդյոք թեկուզ մի աննշան մասնիկ
Վաստակներում ձեր այս անքանքար –
Ժողովուրդը, որ իր աշխատա՛նքն է ազնիվ
Ձեր սեղանին բերել՝ արնաքամ: –
Օ, ո՛չ: – Ապրել է նա իր ճորտային կյանքով,
Խոր խավարում՝ արև՛ երազել, –
Եվ երգել է դարեր իր ռամկական հանգով
Իր խոհերը արդար ու վսեմ:
Ստեղծել է նա իր հեքիաթները, – և իր
Հնամյա վեպում հանճարեղ -
Իր ապագա կյանքի գաղափարը կարմիր
Եվ անմահ խորհուրդն է դրել:
Խոր գերության ներքո, այնուամենայնիվ,
Պատմության քառուղիներում ոլորապտույտ,
Պայքարել է ոգով, մաքառել է նա միշտ,
Եվ չի կորել դաժան տարիներում այն մութ: –
Խո՛ր գերության քարե կամարների ներքո,
Բռնության տակ հայրենի և օտար,
Նա մեր անպարտ ոգու ստեղծարար բերքի
Ճանապարհին է հարթել անդադար:
Այդ ճանապարհին է, որ չնչին արքաների
Եվ բոլո՛ր տերերի ոչնչությանն ընդդեմ –
Դարձրել է ոգին մեր – այնքա՛ն բերրի,
Ամե՛ն ճորտության անընտել:
Այդ ճանապարհը ձգվում է ահավասիկ
Մեր օրերից մինչև միջնադարյան հեռուն,
Մինչև դարերը հին, ուր մենք հազի՛վ ենք
Պատմության ընթացքը տարբերում:
Քայլել են քարքարոտ այդ ճանապարհով
Գորշ, անանուն մարդիկ, գեղջուկ ճորտեր, –
Կրել են կրծքերում գաղափարներ գերող,
Ստեղծարար մտքեր, բոցե բառեր, որ դեռ
Չեն խոյացել երկինք, չեն ընդունել դեռ ձև,
Բայց կհառնեն մի օր կերպավորված, –
Օ՛, հանճարե՛ղ ոգու դեռ չբացված գանձե՛ր,
Եվ հանճարի հանքե՛ր դեռ չփորված...
Ա՛յս է տվել նրան ոգու անհուն կորով
Եվ ա՛յս է մեզ փառք սահմանել, –
Բայց կարո՞ղ էր արդյոք՝ կապանքներում գերող՝
Իր հուրը անեղծ նա պահել...
Արքաների օրով և իշխանների
Կքել է ճորտության կապանքներում նա լուռ,
Եվ անգամներ բազում նա քշվել է գերի
Եվ գերությունը իր կրել է համր ու լուռ: –
Եվ գերության գրկում կեղեքող
Յուրաքանչյուր գերին՝ աչքը ահեղ մահի՝
Ծածկել է խեղճության թաղիքով
Իբրև անգին մի գանձ, իբրև ավանդ վերին՝
Իր հանճարեղ ոգու կրակն անշեջ,
Ստեղծարար այն հուրը, – և բոլորից թաքուն
Վառել է միայնակ, վախվըխելով, ինչպես
Հանցագործն է վառում իր լապտերը միգում:
Ջլատվել է այսպես ժողովրդի անեզր
Հավաքական հանճարը զարկիչների հանդեպ, –
Եվ դարձել է ահա ժողովուրդը և՛ս,
Իր տերերի նման, անուղի ու անդեմ...
Իսկ ապա, երբ փոխվել է ընթացքը դարերի,
Երբ դարերում մարել է թիթեղյա,
Սակայն շլացուցիչ պորփյուրն արքաների –
Եվ արքաների տեղ ա՛յն
Ոսկի՛ն է նվաճել իշխանություն ու փայլ,
Բաժանել արյունոտ դափնիներ,
Պետություններ կանգնել,
ուր պճնություն ու փառք
Կարելի է գնել, –
Նա քշվել է կրկին նախիրների նման
Դեպի թիարաններն անհաց աշխատանքի,
Եվ վաստակել այնտեղ մինչև ի մահ՝
Ընտելացած արդեն անինքնուրույն կյանքի:
Եվ անհաց վաստակի այդ թիարաններում,
Ինչպես առաջ՝ դաշտերում ճորտության –
Վիճակվել է նրան մի կապարե հեռու
Կրկնակի տառապանքի և գերության:
Նրա գլխին շաչող այդ նոր խարազանը
Եղել է երկճյուղ, ինչպես քիստ, –
Եվ վաստակը ոգու, որ սրբազան է –
Արգելված է եղել նրան միշտ:
Բայց առաջին անգամ իր գոյության չարքաշ
Հազարամյա ուղու ընթացքում –
Նա այստե՛ղ է տեսել շողշողացող մի այգ,
Որ պայքարով է բացվում...
...
...
Եվ այսպես – պատմության քառուղիներով
Անցել ենք մենք անդեկ ու անգաղափար,
Շառագունված անվերջ ուրիշների հրով, –
Եվ մեր ճանապարհը անփայլ
Եղել է ճանապարհ ունայնության, մահի –
Եվ չե՛նք կարող այսօր ձեզ մեծարել
Օ, նախնինե՛ր մեր խեղճ,
առաջնորդնե՛ր մեր հին, –
Մեր պատմություն անդեմք ու անհանճարեղ...
Ահավասիկ ելած ձեր աներազ քնից
Նզովում ենք մենք ձեր եղկությունը մթար –
Օ՛, կերտողնե՛ր չնչին մեր անհանճար հնի
Եվ հերոսնե՛ր անքանքար մեր պատմության...
Մոլորակի վրա այս խայտաբղետ,
Աշխարհի սկզբից մինչև վախճանը
Երևի առաջին ժողովուրդն ենք մենք,
Որ կամենանք անգամ – դավաճանել
Անկարող ենք փառքին մեր ու
պատմությանն անցած,
Ու կանգնած ենք ահա ապագայի հանդեպ
Զարմանալի՛ թեթև, զարմանալի՛ անդեմ՝
Մերկության պես տկլոր ու անանցյալ...
Այդ մե՛նք ենք երևի այն ուղտը հաստակող,
Որ Հիսուսի առակին հակառակ –
Պիտի մտնենք՝ անգամ ասեղի նուրբ ծակով՝
Ապագայի դրախտը անարատ...
Այդ մե՛նք ենք երևի այն հարուստը,
Որ անցյալի մեր այդ տկլորությամբ հարուստ –
Պիտի ժառանգենք մեր դարերի կորուստը,
Որ բոլո՛ր տկլորներին սահմանված է վերուստ...

**1933 թ.**

# 5 բան, որ ավելի կարևոր են, քան փողը

## 1. Մարդկային շփումները

Համբուրեք ինչ որ մեկին, նամակ գրեք, համեղ բան պատրաստեք և կերեք սիրելիի հետ, զանգահարեք ընկերներին, սիրով զբաղվեք: Ընտանիք, ընկերներ, ինչ կարող է լինել դրանից կարևոր:

## 2. Ֆիզիկական առողջությունը

Առողջությունը չի կարելի գնել, բայց կարելի է պահպանել՝ առողջ ապրելակերպ ընտրելով:

## 3. Հոգևոր առողջությունը

Սեփական անձի և շրջապատող աշխարհի հանդեպ առողջ վերաբերմունք:

## 4. Կենսուրախությունը

Սա մի բան է, որ բոլորովին կախված չէ փողից: Կյանքով լի, եռանդուն, ոգեշնչված մարդիկ վարակում են շրջապատին իրենց կենսուրախությամբ:

## 5. Սեփական ուժերի վրա վստահ լինելը

Փողը կարող է լինել և չլինել, բայց սեփական անձի հանդեպ հարգանքն ու վստահությունը մշտապես ձեզ հետ է և ուժ է տալիս ելք գտնել յուրաքանչյուր իրավիճակից:

# Պերեստրոյկայի գաղտնի պլան՝ «Գողգոթա» օպերացիան...

**«Անցյալը պետք է գիտենալ ոչ թե՝ պատճառով, որ այն անցել է, այլ որովհետեւ հեռանալով՝ այն չի կարողացել վերացնել իր հետեւանքները»**
*Միխայիլ ԺՎԱՆԵՑԿԻ*

## *Անկախության ԳԻՆԸ...* Թարգմանչի ներածական խոսք



Մի շարք հանդիպումների ու զրույցների ընթացքում ինձ համար պարզ դարձավ, որ մեր ջահելները եւ (ոչ միայն ռուսերենից հեռու) ընթերցող հայրենակիցներից շատերը տակավին տեղյակ չեն Մ. Լյուբիմովի՝ վերոհիշյալ «Պերեստրոյկայի գաղտնի պլանը՝ **«Գողգոթա»** Օպերացիան » (1) հոդվածից:

Հաշվի առնելով, որ հոդվածի փաստագրական կամ մտացածին լինելուց անկախ, այն ինքնին հրատապ իմացական հետաքրքրություն էր ներկայացնում, ես օգտակար համարեցի այն թարգմանել հայերեն եւ որոշեցի ներկայացնել հայրենակիցներիս ուշադրությանը:

Սույն ներածականը, կարծում եմ, հարկ է սկսել ռուսերեն Википедия -ից արված հետեւյալ մեջբերումից (թարգմանությունը իմն է):

«... Միխայիլ Լյուբիմովը իր **«ՊԵՐԵՍՏՐՈՅԿԱՅԻ ԳԱՂՏՆԻ ՊԼԱՆԸ՝ ԳՈՂԳՈԹԱ ՕՊԵՐԱՑԻԱՆ»** – հոդված-միստիֆիկացիան հրապարակեց 1995 թվականին **«Սովերշեննո Սեկրետնո»** թերթում, ինչը աղմուկոտ սկանդալի պատճառ է դարձել:

Հոդվածում նախկին չեկիստի անունից պատմվում է (վերակառուցման-պերեստրոյկայի իբրեւ ԿԳԲ-ում մշակված) «Գողգոթա» ծածկանունը կրող գաղտնի պլանի մասին:

Պլանի էությունը հետեւյալն էր.

**Երկիրը պետք էր հասցնել վայրի կապիտալիզմի քաոսային հորձանուտ, ժողովրդին ապացուցելու համար սոցիալիստական հասարակարգի անվիճելի առավելությունները, այնուհետեւ, օգտագործելով զանգվածների դժգոհությունը, վերադառնալ նախկին (սոցիալիստական) կացութաձեւին:**

Այս տեքստը շատերի կողմից ընկալվեց որպես ԿԳԲ-ի քաջատեղյակ աշխատակցի խոստովանանք, բանը հասավ նույնիսկ նրան, որ [նյութի հավաստիության վերաբերյալ] Պետդումայի անունից՝ պաշտոնական հարցում ուղարկվեց հատուկ ծառայությանը: («Википедия. Михаил Любимов») http://ru.wikipedia.org. (http://ru.wikipedia.org./)

**... Обрядился в демократа Брежневский «пират»,**
**Комсомольская бригада**
**Назвалась программой «Взгляд»...**
**Перестроиться не сложно,**
**Только вот ведь в чем беда:**
**Перестроить можно рожу,**
**Ну а душу – никогда.**
***« Игорь Тальков: (из песни «МЕТАМОРФОЗА-2»)***

Ինչքան շատ ենք հեռանում 1988-ից, այնքան ավելի ու ավելի անցած-գնացածը երազ է թվում. հետաքրքիր, բայց՝ խորհրդավոր, պերճախոս, բայց անավարտ, հաճելի, լավատեսական սկիզբ, ու՝ խառը, մի տեսակ՝ ցավալի, անցանկալի շարունակություն ունեցող, դառն ու անախորժ ՝ երազ (գոնե՝ մեզանից ոմանց համար)...:

... Հիմա էլ շատ պարզորոշ հիշում եմ, որ 1988-ի ամենասկզբում, փետրվարյան հանրահավաքների ոգեշունչ օրերին, ես չէի կարողանում ձերբազատվել այն տագնապալի զգացումից, թե ինչ-որ գերիզոր ուժեր, մեզ, իբրեւ մարիոնետների օգտագործում են իրենց գլոբալ խաղերում:

Շատ շուտով (բառացիորեն՝ ամիսներ անց), շրջապատում արդեն գրեթե չկար վերլուծությունների ու մտորումների հակում ունեցող որեւէ մեկը, որ համոզված չլիներ, թե ծավալվող բուռն իրադարձություններն ընթանում են նախօրոք մշակված, շատ բարդ, բայց եւ՝ շատ կոնկրետ սցենարով: Իհարկե որոշակի վկայություններ կամ շոշափելի փաստեր, որոնք կապացուցեին այս «հիպոթեզը», ոչ մեկը չուներ. բոլոր վարկածները սոսկ եզրահանգումներ էին, հիմնված մի քիչ պատմական փորձի, մի քիչ արտաքին աշխարհի մակերեսային երեւույթների, իսկ ավելի շատ՝ երեւացող՝ ընթացիկ դեպքերի, ու դրանց տրվող գնահատականների տեսական-սիրողական վերլուծությունների վրա:

**Ավելի համառոտ. Այդ ամենը հիմնվում էր միայն սառը դատողության վրա:**

Ինքներդ դատեք. Հանկարծ, երեկվա կոմերիտական ակտիվիստը, որը, ոչ ավել - ոչ պակաս ԵՊՀ-ի ֆակուլտետի կոմսոմոլի քարտուղար էր, օրը ցերեկով, բազմահազարանոց հանրահավաքի առջեւ բառիս բուն իմաստով հայհոյում է ոչ ավել – ոչ պակաս հանրապետության գաղտնի ոստիկանության (այսինքն ամենակարող ԿԳԲ-ի) պետին, երկրի վարչապետին, ռազմական պարետին եւ այլն, ու օ զարմանք, հաջորդ իսկ օրը, նույն այդ երիտասարդը, նույն տեղում, ողջ-առողջ նույն բանը կրկնում է էլ ավելի թունդ տոնայնությամբ:

Նմանատիպ զարմանահրաշ ներկայացումները, որտեղ ժամերով ծաղր ու ծանակից մինչեւ հայհոյանքներով ու նզովքներով համեցած ելույթներ էին հղվում օրվա պետական իշխանության կառույցներում բարձրագույն ու միջանկյալ պաշտոններ զբաղեցնող կոմկուսակցական ու սովետական չինովնիկների հասցեին, կրկնվում էին օրեցօր:

Բնականաբար, ներկաներից ոչ բոլորն էին հավատում, որ այդ շատ բարձրագոչ, աշխույժ, վտիտ ու կոլտտ կոմսոմոլը, ինչպես նաեւ հավաքների մյուս կազմակերպիչները ամեն օր նախաճաշին, ճաշին ու ընթրիքին արյունծի սիրտ էին ուտում...:

Բայց միտինգային բազմության համար այնքան հաճելի ու ցանկալի էր այդ ջահել ավանտյուրիստի հայհոյանքի տարափն ու ատելության մաղձը, որ հիմնական զանգվածը չէր էլ ուզում խորանալ կասկածելի մանրամասների մեջ. ինչպես նաեւ չէր ուզում ինքն իրեն հարց տալ, թե ինչ հրաշքով եւ ինչու պետք է ոստիկանության շարժակազմերը խրախուսեն ջահերով գիշերային կրքոտ բողոքի երթերն ու հակակառավարական հանրահավաքները:

Իհարկե, որոշ «խելոքներ» երբեմն ճգնում էին կարկամ ու անհեթեթ բացատրություններ տալ.....«խմբ»...

Նախօրոք մշակված, բարդ, բայց եւ՝ կոնկրետ սցենարի մասին վարկածները միմյանցից հիմնականում տարբերվում էին նրանով, թե մեզնից, այսինքն այդ տնայնաբույծ «վերլուծաբաններիցս», ով ում, այսինքն, ինչ ուժի էր վերագրում այդ խրթին սցենարի հեղինակային իրավունքը:

(Ի միջի այլոց, հնարավոր «սցենարիստների» հիպոթետիկ ցուցակը բավականին ընդարձակ էր, այն ընդգրկում էր գաղտնի ու հայտնի տարբեր կառույցներ սկսած «սիոնիստներից», «մասոններից» ու ամերիկյան ԿՀՎ-ից, վերջացրած «պան-թուրքիզմով», «պան-իսլամիզմով», ու ռուսական, ավելի ճիշտ, այն ժամանակ, դեռեւս, խորհրդային ԿԳԲ-ով):

Իսկ ընդհանուրն այն էր, որ այդ «կարծեցյալ» «սցենարիստներից» ոչ մեկի շահերը, փաստորեն, չէին համընկնում մեր՝ հայերիս շահերի հետ, ու վերլուծությունների արդյունքում արվող գրեթե բոլոր կանխատեսումները հոռետեսական էին, այսինքն նույն ոչ հայանպաստ արդյունքին էին հանգում:

Է15

14Ͻ

Բայց, արի ու տես, որ ի զարմանս եւ` հուրախություն մեզ, դա չէր կոտրում որեւէ մեկի` պայքարելու վճռականությունն, այլ ընդհակառակը, ավելի էր բորբոքում բոլորի խելահեղ պատրաստակամությունը` կռվելու ... թեկուզ ... ամբողջ աշխարհի դեմ:

Արդյո՞ք մենք էինք խիստ անպատրաստ, կամ անհամբեր, թե՞ որովհետեւ խաղն այդպես էր մտածված, հիմա է՛լ չեմ կարող վստահորեն ասել, սակայն մի բանում համոզված եմ, որ մեր` հավաքական իմաստով` հայության, եթե իհարկե կարելի է պայմանականորեն այդպես ձեւակերպել, բոլոր քայլերը ուղղակի միակ հնարավոր քայլեր էին, մենք ուրիշ ելք չունեինք, քան շարժվել այդ անհայտ ու առեղծվածային «սցենարիստի» գծած «ճանապարհային քարտեզի» հիման վրա:

Այսպիսով, բոլորս պատրաստ էինք` ակամա, ընդունել մարտահրավերը, ու` ակամա, ... խաղալ մեզ համար անհայտ ու անորոշ պայմաններով այդ խաղը ...:

Չեմ կասկածում, (եւ` փառք Աստծո, որ այդպես է), թե` չնայած մեր տված բազմաթիվ զոհերին, այսօր էլ դեռ ապրում են շատերը, ովքեր դեռեւս 1989-90 թթ-ին. արդեն կռահում էին, որ ինչպես Մոսկվայի «ռեֆորմատորների» այնպես էլ տեղական չուբայսա-գայդարային շոկո-թերապևիստների` ՀՀՇ-ի առաջնորդների, ժողովրդավարության, մարդու իրավունքների ու ազատությունների մասին հնչող կրակոտ ճառերն ու ճոճռան կարգախոսները` սոսկ դեմագոգիկ հեքիաթներ էին:

Այսօր արդեն պարզ է, որ` ինչպես եւ նախատեսված էր, դրանք լուծեցին երկու խնդիր.

**Առաջին.** 70-ամյա «խորհրդավոր» նիրհից հանկարծ զարթնածվեր-թռած զանգվածի «քթից»` հարմար բռնելու եւ, առանց շոշափելի բարդությունների, նրան, այդ զանգվածին, ոնց որ ռուսն է ասում – «до последней нитки» (մինչեւ վերջին թելը ) քրսպրելու նպատակով, – դեպի կլեպտոկրատական «կըզարան» քարշ տալու խնդիրը:

**Երկրորդ.** Ազատ աշխարհի «քթից» հարմար բռնելու եւ նրան խաբել, հիմարացնելու խնդիրը, թե տեսեք-տեսեք մենք արդեն գիտենք, որ մարդակերությունը` վատ բան է, արդեն pseudo-(կեղծ) սոցիալիզմի ծառից իջել ենք ու, էլ, ոչ` միմյանց, ոչ էլ` ձեզ, չենք պատրաստվում խժռելու:

(Ասենք, ինչ վերաբերվում է երկրորդ մասին, իհարկե «ազատ աշխարհի» գիշատիչները հաճույքով իրենց բաժինը ավարը առան. ու «հիմարացած» ձեւացան բայց դե, դա արդեն ուրիշ կինոյից է, որին հիմա չենք անդրադառնա...)

Հենց այդ ժամանակ էր, որ տեղի էր ունենում զանգվածների համակրանքը վայելող, նրանց ոգեշնչման առիթը հանդիսացող ու երկրի քաղաքական ղեկին անշրջելիորեն հավակնող ՀՀՇ-ի, ատիճանական կերպարանափոխման ու այլասերման նախապես պլանավորած գործընթացը, որի արդյունքում այն պիտի վերածվեր համայն հայության Հիմարացման Համելուկային Շարժման` և Հայաստանի Հանրապետության իսկապես ինքնիշխան ու անկախ պետականության կայացման խնդիրը անորոշ ժամանակով հետաձգեր, դնելով իրենց գործած մեղքերով ու հանցագործություններով ծանրացրած տիտանական այդ բեռը գալիք սերունդների ուսերին:

Այդուհանդերձ, մի տեսակ ինտուիտիվ մակարդակի ֆանտաստիկ վստահություն կար բոլորիս մեջ, գուցե, առ այն, որ Աստվածային ինչոր հրաշք-ձեռնարկների ու մեր ժողովրդի ոգեղեն վճռականության շնորհիվ, ի հեճուկս բոլոր տեսակի բացասական-ռեալիստական կանխատեսումների ու տրամաբանական աննպաստ մոդելների, մեզ հաջողվելու է օգտվել աշխարհի հզորների հակասություններից` ու արդյունքում հաղթելու ենք, ... «մեկ է, ... մեր հաղթանակը անխուսափելի է...»:

Եվ դա, անկեղծ ասած, ամենից հիասքանչն ու զարմանալին էր...

***P.S.*** *Ի դեպ, նաեւ, արդեն այդ օրերին էր, որ ուշադիր դիտորդները, հետեւելով երկրի քաղաքական ղեկավարման լծակներին տիրացած եւ օրենսդիր ու գործադիր մարմինները վերից վար զրաված դատարկագլուխ, բայց ավանտյուրիստ ու ճարպիկ ստահակներին, արդեն զարմացած կրկնում էին (ոմանց ասելով` իբր թե` Վանոյի) արտահայտությունը, թե` «եղբայր, դեռ բոլորովին վերջերս հանրապետությունում հաշված թվով անառակ կար, բա լավ, էսքան նմանների տղերք մեզ մոտ որտեղի՞ց հայտնվեցին...»:*

*Իսկ գուցե Մ. Լյուբիմովի այս հոդվածը ինչ որ չափով կպատասխանի տրված հարցին ... *** ... А вокруг, как на парад, Вся страна шагает в ад Широкой поступью...» ... Игорь Тальков (из песни «РОДИНА МОЯ»)*

# Վերջաբանի փոխարեն ...

Ոչ շատ հեռու անցյալում հրապարակածս` «Հիշել, թե չհիշել» հոդվածում ես մի հարց էի շոշափել, որը, ըստ էության, բաղկացած էր երկու մասից.

**Ինչպե՞ս բացատրել այն հանգամանքը, որ`**

**– ա)** շատերը հսկայական ջանք ու միջոց են ներդնում, վերականգնելու համար անհիշելի ժամանակներում տեղի ունեցած, (կամ չունեցած) իրադարձությունների ու երեւույթների, անգամ` աննշան մանրամասները.

**Մինչդեռ` մե՛նք,**

**– բ)** մենք հաճախ` մատը-մատին չենք ուզում խփել` պարզելու համար հենց երեկ գլխներիս եկած փթարի «ուղնուծուծը» [էությունը]:

**Ինչու՞ ...:**

«Պատմական ժամանակաշրջանի» առումով, բառացիորեն` «երեկ», մեզ հետ տեղի ունեցած սարսափելի` կատակլիզմների ու զայրացուցիչ մետամարֆոզների վերաբերյալ հրապարակվող սակավաթիվ վկայություններն ու փաստերը չեն ենթարկվում պատշաճ վերլուծության, չեն քննարկվում անհրաժեշտ մանրակրկիտությամբ:

Շատ հաճախ, ընդհակառակը, այս ամենը, անթաքույց դիտավորությամբ, լղոզվում է ու հրվում-գցվում` անլուծելի առեղծվածների շարքը:

Եւ, որ ամենակատեւորն է, ոչ հեռու անցյալում տեղի ունեցած այդ ձեռակերտ ավերածությունների ու նողկալի կողոպուտի` կազմակերպիչներն ու իրագործողները, ոչ միայն չեն ստանում արժանի պատիժը, (որը պետք նշանակեր ավազակների թալանածի բռնագրավում ու նրանց ազատազրկում), այլեւ չեն ստանում գոնե` իրենց արժանի քաղաքական գնահատականը:

Ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ այսօր առանց ֆինանսական միջոցների անհնար է որեւէ բնույթի քաղաքական պայքար վարել:

Դրա հետեւանքով, նրանք, այդ չարագործները, գործի դնելով ժողովրդից գողացած ու պետական զանձագողությամբ կուտակած իրենց հարստությունը, հենց սկզբից ձեռք գցելով պետական կառավարման ղեկը, մեկընդմիշտ, անբաժանելիորեն տիրում են նաեւ ընդդիմադիր քաղաքական դաշտին:

***Միխայիլ ԼՅՈՒԲԻՄՈՎ***

# «Գողգոթա» օպերացիան...» իրողությու՞ն էր, թե՞ միստիֆիկացիա...

1983 թ.-ի փետրվարյան մռայլ երեկո էր. ես հեռատեսիլ էի դիտում: Ժամանակները խաղաղ էին այդ օրերին, թեպետ մթնոլորտը ներծծված էր մի տեսակ զուսպ սպասումով.

1982-ի նոյեմբերին մահացել էր Բրեժնեւը եւ Անդրոպովը ընտրվել էր Կենտկոմի Գլխավոր Քարտուղար: Հնչեց հեռախոսազանգ, օրվա ընթացքում դրանք շատ էին: Բայց երբ վերցրի հեռախոսափողը եւ լսեցի զանգահարողի ձայնը, անորոշ հուզմունք զգացի:

Հեռախոսափողում հնչեց .

– Բարի երեկո, Միխայիլ Պետրովիչ, չճանաչեցի՞ք:

– Ներեցեք, տեղը չեմ բերում, – պատասխանեցի չոր (չեմ սիրում երբ չեն ներկայանում):

– Մի՞ թե չեք հիշում ձեր ներկայացրած վերլուծական գրություններ` կանխատեսումներով:

Զրուցակիցս կարճատեւ դադար տվեց, հնարավորություն ընձեռելով ինձ` շոկային վիճակից դուրս գալու:

– Յուրի Վլադիմիրովիչ, դու՞ք եք: ...

Այդ էր պակաս... Ինչպե՞ս կարող էի մոռանալ այն չարաբաստիկ գրությունները, չէ որ ամեն ինչ սկսվեց հենց դրանցից: 1980-ին ես ղեկավարում էի ՊԱԿ Գլխավոր Վարչության Կանխատեսումերի բաժինը (ներկայումս այն վերանվանվել է Արտաքին Հետախուզության Բաժին):

Հենց իր` Անդրոպովի ցուցումով, իմ բաժնում սկսվեց ԽՍՀՄ-ի զարգացման բոլոր հնարավոր տարբերակների վերլուծական կանխատեսման գործընթացը արեւմտյան ամենաժամանակակից հաշվիչ մեքենաների կիրառմամբ: Գործի էին դրվել ոչ միայն ՊԱԿ-ի,

Ͻ16

15➲

Պաշտպանության նախարարության, (հատկապես՝ Գլխավոր Հետախուզական Վարչության), Պետ-Պլանի ու Նախարարների խորհրդի ինֆորմացիոն համակարգերը, այլ նույնիսկ երկրի սուրբ-սրբոցը հանդիսացող՝ Կոմկուսի Կենտկոմի՝ Կառավարման Ավտոմատ Համակարգը (АСУ- ЦК КПСС):

Աշխատանքներում կիրառվում էին ամերիկյան եւ հայրենական ամենաժամանակակից մեթոդները, ծրագրերում հաշվի էին առնվում արտաքին ու ներքին բազմահազար գործոններ, որոնց ազդեցությունը վճռորոշ էր ԽՍՀՄ զարգացման գործում:

Որոշ տարբերակներ դեն նետելուց հետո, արդյունքում, իմ սեղանին մնաց տասը տարբերակ. դրանք բոլորը ավարտվում էին՝ երկրում լիակատար քաղաքական ու տնտեսական աղետով, եւ՝ ոչ մի բարենպաստ ելք:

Խոստովանում եմ, որ դա ինձ համար անսպասելի էր: Ոչ առանց որոշ տարակուսանքի, ես փոխանցեցի փաստաթղթերը վարչության պետին՝ Վլադիմիր Ալեքսանդրովիչ Կրյուչկովին, որը պահանջկոտ, սակայն արդարամիտ մարդ էր: Վլադիմիր Ալեքսանդրովիչը փաստաթղթերը իր մոտ պահեց երկու շաբաթ, (ինչը խիստ հազվադեպ էր պատահում), եւ վերջապես, հոգոց հանելով՝ դրանք վերադարձրեց ինձ:

– Դուք անձամբ կզեկուցեք Նախագահին, – սառը հրահանգեց նա:

Ակնհայտ էր, որ Կրյուչկովը չէր ցանկանում ինքն իրեն հարվածի տակ դնել, չէ որ հայտնի բան է՝ Ռուսիայում գույժը տեղ հասցնող լրաբերներին միշտ էլ գլխատում էին:

Արդեն հաջորդ օրը Յասենեվոյում գտնվող մեր շտաբ-բնակարանից ես մեկնեցի Լուկյանովի, նախագահի ընդունարանը: Նա ինձ նորմալ ընդունեց, արտակարգ ուշադրությամբ լսեց, չնայած, անկեղծ ասած, ես սպասում էի սուր քննարկման ու նույնիսկ, ավերիչ քննադատության՝ վատ կանխատեսումների համար: Նա լուռ էր, սակայն բարյացակամ ճանապարհեց ինձ: Եվ հենց այդ էր պատճառը, որ ես խիստ զարմացա, երբ երկու շաբաթ անց ինձ կանչեցին կադրերի վարչություն ու ազատեցին աշխատանքից աշխատածս տարիները լրանալու պատրվակով:

Ընդ որում, Անդրոպովի ստորագրած հրամանի համաձայն, ես դուրս էի նետված ՊԱԿ-ռեզերվից ու նույնիսկ զրկված էի գերատեսչական պոլիկլինիկայից օգտվելու իրավունքից, ինչն արդեն արտասովոր դաժանություն էր ...

– Միխայիլ Պետրովիչ, հիմա իհարկե ուշ ժամ է, սակայն չէի՞ք կարող, արդյոք, ինձ մոտ գալ:

– Իհարկե, Յուրի Վլադիմիրովիչ, – անմիջապես պատասխանեցի ես:

(Հուզմունքից սիրտս սկսեց շատ արագ բաբախել. էլ ուրիշ ի՞նչ կերպ կարձագանքեր թոշակառուի մեկը, որին աղբանոց են գցել, ու մեկ էլ հանկարծ...), – ուղիղ Լուկյանովի պիտի գա՞մ:

– Ոչ, Կոլպաչնի: Կոնսպիրացիայի նկատառումով՝ մեքենա չեմ ուղարկում: Ստուգեք, հետեւներիցդ հո՝ «պոչ» չկա: Լա՞վ:

– Ճիշտ այդպես, Յուրի Վլադիմիրովիչ, – երկարամյա ծառայությունը հետախուզությունում սովորեցրել է ինձ խուսափել ավելորդ հարցերից, մանավանդ՝ հեռախոսով:

Սոցիալիստական երկրների հետախուզական ծառայությունների ղեկավարների հետ անցկացրած բանակցություններին մասնակցելու նպատակով, ես շատ էի եղել Կոլպաչնի նրբանցքում գտնվող ներկայացուցչական առանձնատանը, որտեղ մի ժամանակ ապրել էր «СМЕРШ»-ի շեֆը, Ստալինի մահից հետո գնդակահարված՝ Վիկտոր Սեմյոնովիչ Աբակումովը:

Մի ժամ անց ես արդեն սեղմում էի առանձնատան մուտքի կոճակը: Ի խորին զարմանս ինձ, դուռն իմ առջեւ բացեց ինքը՝ Անդրոպովը:

– Չեք սառե՞լ, – նա մեղմ ժպտաց:

Մենք անմիջապես անցանք երկրորդ հարկ, ընկուզենու փայտից պատրաստված կահույքով ու գրքերով լի գրապահարաններով կահավորված առանձնասենյակ, տեղավորվեցինք բազկաթոռներում: Յուրի Վլադիմիրովիչը անմիջապես միացրեց սամովարը եւ բուֆետից հանեց չորաբլիթներն ու գավաթները:

– Դեհ, ինչպե՞ս եք ձեզ զգում թոշակի անցած վիճակում:

– Ոնց ձեզ ասեմ, այ՝ պոլիկլինիկայից էլ դուրս գցեցին:

– Ես գիտակցաբար աշխատեցի ձեզ չեկիստական միջավայրից մեկուսացնել, – Անդրոպովը ժպտաց, – Դուք ինձնից հո շատ չե՞ք նեղացել:

Ես լռեցի:

– Դե, այդ դեպքում ներեցեք ինձ: Դուք հասկացա՞ք, ձեզ ինչի համար ազատեցին:

– Կարծում եմ, կանխատեսումներիս պատճառով, – ուղիղ պատասխանեցի ես, ակնկալելով փոթորիկ:



– Ձեր հիանալի կանխատեսումների, – ուղղեց Անդրոպովը, անասելի զարմանք պատճառելով ինձ: – Ավելի սարսափելի բան ես երբեւէ չէի կարդացել, դրանից հետո անկեղծ ասած, մի քանի օր չէի կարողանում քնել: Սակայն, դրանք վերջ դրին իմ վարանումներին: Ելք չկա: Դուք պատրա՞ստ եք կատարելու արտակարգ կարեւորության իմ առաջադրանքը:

- Անկասկած, — պատասխանեցի ես՝ միանգամայն անկեղծ, քանի որ, ազնվորեն պետք է խոստովանեմ՝ միշտ աստվածացնում էի Անդրոպովին:

– Ես այս հարցը ձեւի համար տվեցի, – ժպտաց Յուրի Վլադիմիրովիչը,

– Փառք Աստծո, ձեր կյանքի ու ձեր տրամադրությունների մասին ես ամեն ինչ գիտեմ: Գուցե ավելին, քան, նույնիսկ, դուք՝ ինքներդ: Այս վերջին մասի վերաբերյալ, ես կասկած չունեմ: Թոշակից հետո շոշափելիորեն զգացի, որ ակտիվագույնս «մշակման» եմ ենթարկվում, բնակարանս «լսում են», ու կյանքս ամբողջապես վերահսկվում է արտաքին դիտարկմամբ:

– Այն ամենն ինչ կանխատեսել էիք, սարսափելի ճշմարտություն է, – շարունակեց Անդրոպովը: – Այդ գործընթացը անշրջելի է, դեռ Լեւ Դավիդովիչ Տրոցկին էր կանխատեսում կուսակցության քայքայումն ու թերմիդորը: Մեր՝ ձեզ հետ միասին, ռազմավարական խնդիրն է՝ վերականգնել իրական սոցիալիզմը, ձերբազատվելով անցյալի բոլոր նստվածքաշերտերից:

– Իսկ դուք վստա՞հ եք, որ դա է պետք մեր ժողովրդին, – հարցրեցի ես, որոշ գաղափարական հանդգնություն դրսեւորելով:

– Ես համոզված եմ նրանում, որ այս երկիրը ստեղծված է հանրության կոլեկտիվ համակեցության (ապրելակերպի) համար: Ժողովրդի մեծամասնությունը կարող է ապրել ոչ այլ կերպ, քան միայն ի հաշիվ եռանդուն ու տաղանդավոր փոքրամասնության: Անհնար է ստիպել, որ այս զանգվածն աշխատի: Ավելին, այն անմիջապես սկսում է խռովվել: Ո՞րն է ելքը: Ոչնչացնե՞լ համարյա ամբողջ ժողովրդին: Բայց դա ստալինշչինա (ստալինականություն) է: Մնում է միակ ելքը՝ ստեղծել նոր հասարակություն:

– Ներեցեք ինձ անկեղծության համար, Յուրի Վլադիմիրովիչ, բայց ձեր առաջին քայլերը՝ որպես գլխավոր քարտուղար, իմ կարծիքով, չնչին չափով անգամ ուղղված չեն դրան: Մի՞թե կարծում եք, թե անբաններին փողոցներում որսալով ու աշխատանքի գալու ժամը խստորեն հաշվառելով, մենք կդրդենք մարդկանց սոցիալիզմի կառուցմանը: Իսկ օղու գնի իջեցման մասին ձեր որոշումը, որ ժողովրդականություն նվաճեց զանգվածների մոտ ...

– Յինի՞կ է, – հարցրեց Անդրոպովը ժպտալով:

– Այո , – բռնկվեցի ես: – Ձեզ համար պարզվեց մեր ռազմավարական նպատակը, սակայն դուք առայժմ չեք հասկացել, թե որոնք են դրան հասնելու ուղիները: Համակարգը մեռել է, այն վերականգնել՝ հնարավոր չէ, եւ դրա կարիքն էլ՝ չկա. ինչների՞ս է պետք կենդանի դիակը:

Խնդիրը հետեւյալն է՝ պետք է վերջնականապես ոչնչացնել այն, եւ նրա փոխարեն կառուցել իսկական սոցիալիզմ, որին կսատարեր ողջ ժողովուրդը: Ողջ ժողովուրդը, ընդ որում՝ ազատ ընտրություններով:

– Խոստովանում եմ, որ այնքան էլ լավ չեմ հասկանում ձեզ, Յուրի Վլադիմիրովիչ: Արդյո՞ք դա, այսինքն՝ ժողովրդի սոցիալիստական էնտուզիազմին հավատալը, վտանգավոր «մանիլովշչինա» չի (անգործության մատնող անիմաստ ու երազկոտ ինքնախաբեություն):

– Այ հենց էստեղ է, որ մենք անցնում ենք օպերացիայի բուն էությանը: Սոցիալիզմի հանդեպ սերը մեզ մոտ կաճի ու կհասունանա՝ կապիտալիզմի նկատմամբ ատելությունից: Դրա համար ձեզ հանձնարարվում է կազմել ԽՍՀՄ-ում կապիտալիզմի ներդրման ծրագիր, ընդ որում ոչ թե փափուկ, շվեդական սոցիալ-դեմոկրատական բնույթի:

➲17

16⊃

Մենք պետք է երկիրը գցենք վայրի, սանձարձակ կապիտալիզմի գիրկը, որտեղ տիրում է ջունգլիների օրենքը:

Նախագահը ուշադիր նայեց ինձ:

– Ես ամեն ինչ հասկացա, Յուրի Վլադիմիրովիչ: Բայց արդյո՞ք դա շատ մեծ փորձության չի վերածվի մեր ժողովրդի համար:

– Իհարկե, անասելի մեծ, սակայն ուրիշ ելք չկա: Մի՞թե դուք գտնում եք, որ մեր խղճուկ քարոզչությունը ի վիճակի է ատելություն արթնացնելու կապիտալիզմի նկատմամբ: Միայն սեփական փորձը. որպեսզի զգաս գաթայի համը, պիտի այն ուտես – դա դեռ պապաշա Ֆրիդրիխն է գրել [նկատի ուներ Էնգելսին]: Ձեր տրամադրության տակ եմ դնում իմ բոլոր ծածկագրերը, լսումների, արտաքին դիտարկումների իրավունքը եւ անհրաժեշտ գործակալական ցանցը: Բնականաբար, թե այստեղ, եւ թե՝ արտասահմանյան բանկերում մեր ունեցած հաշիվները: Դուք այդպես էլ կմնաք ստվերում, քողարկվածոցները ինքներդ կընտրեք, ըստ հանգամանքների... Հավանու՞մ եք իմ սիրած չորաբլիթները, Միխայիլ Պետրովիչ: Դուք կարծես ոչինչ չեք ուտում ...

Յուրի Վլադիմիրովիչը ակնոցների տակից ակնդետ նայում էր ինձ:

– Այո, իմ ուղեղը արդեն պտտվում է այն հարցի շուրջ, թե ինչպես լավագույնս սա կազմակերպել ..., – հանուն քաղաքավարության, վերցրի չորաբլիթն ու սկսեցի այն թեթեւակիորեն կրծել:

– Դե ինչ, թող պտտվի, իսկ մի ամսից, երեկոյան ուղիղ ժամը 9-ին ես ձեզ կսպասեմ այստեղ, օպերացիայի վերաբերյալ նախնական ուրվագծերով: Յուրի Վլադիմիրովիչը գրկեց ուսերս (նման բան երբեք չէր եղել) ու աստիճաններով տարավ ներքեւ:

– Ի՞նչ հետաքրքիր նորություն կա մեր մշակույթում, – հարցրեց նա շարժման ընթացքում, ցանկանալով ազատել մեր զրույցը որոշ պրոֆեսիոնալ միապաղաղությունից:

– Վերջերս նայեցի «Ռազմաճակատը՝ Թշնամու Թիկունքում» ֆիլմը, – նկատեցի ես, – նկարահանված Սեմյոն Կուզմիչի (ՊԱԿ-ի նախագահի տեղակալ՝ Ցվիգունի) վեպի հիման վրա: Տիխոնովը շատ լավն էր այնտեղ:

– Վայելավոր «Ռազմաճակատի...» համար հատուկ մրցանակ ստացավ Տալինում՝ Համամիութենական 15-րդ կինոփառատոնում: Մենք էնտեղ Գաբրիլովիչին ու Յուստկեվիչին էլ մրցանակներ տվեցինք լենինյան թեման էկրանում մարմնավորելու համար: Ինչքան հակասական է աշխարհը՝. ե՛ւ՝ Շտիրլիցը, ե՛ւ՝ Լենինը, էկրանի վրա՝ լրիվ ֆիկցիա են, լիակատար կեղծիք: Իրական կյանքում ոչ մի նման բան չի եղել:

Ահա քեզ ողջ համակարգի արժեքը: Յուրի Վլադիմիրովիչը դուռը բաց արեց ու ես փողոց ելա:

Թող ների ինձ ընթերցողը, բայց էթիկական բնույթի նկատառումերից ելնելով, ստիպված եմ գործակալների իրական անունները չհիշատակել, նաեւ, շրջանցել զուտ պրոֆեսիոնալ տեխնոլոգիաներին վերաբերող մանրամասները: Յուրի Վլադիմիրովիչի հետ գաղտնի հանդիպումներ ես ունեցել եմ մինչեւ նրա մահը, իմ կյանքում, իրապես, ամենատխուր օրը. օպերացիան մանրակրկիտ մշակվում էր, պլանը նա ստորագրեց մեռնելուց փոքր ինչ առաջ:

Օպերացիայի՝ որի ծածկանունն էր «Գողգոթա», պլանը տրոհվում էր չորս մասի.

1) գոյություն ունեցող քաղաքական-տնտեսական կառուցվածքի համակարգված կազմաքանդում,

2) հեղաշրջում եւ «վայրի տեսակի» կապիտալիստական համակարգի հարկադիր ներդրում,

3) քաոսի ու անտերության ուղղորդված տարածում, որպես՝ իշխանության դեմ գազազած զանգվածի պայքարի մոբիլիզացիայի միջոց՝ սոցիալիստական լոզունգների ներքո,

4) ողջ ժողովրդի կողմից օժանդակության արժանացած սոցիալիստական հեղափոխություն, կոմպրադորային բուրժուազիայի եւ նրա հետ կապված քաղաքական-տնտեսական կառուցվածքների ռադիկալ ոչնչացում:

– Իհարկե, ես՝ կարող էի արդեն հիմա դե՛ն նետել բոլոր հարգելի դինոզավրերին՝, ե՛ւ Չեռնենկոյին, ե՛ւ Գրիշինին, ե՛ւ Սոլոմինցեւին, ե՛ւ Շչերբիցկուն՝ Կունաեւի հետ միասին. սակայն մեր պլանը պետք է ապուշության որոշ երանգ ունենա: Ամեն դեպքում, առաջին փուլում անհրաժեշտ է այդ թանկագին ծերուկներին պահպանել ղեկավարությունում. դա ժողովրդի մեջ կբորբոքի կիրքը դեպի բարեփոխումները. մենք նրան (ժողովրդին), կարծես, կպահենք զուգարանում, որտեղ մինչ այդ ինչ որ մեկը արդեն ահագին ջանք է թափել:

Ընդհանրապես, որոշ իմաստով, առաջինն՝ ամենից պատասխանատու փուլն է, քանի որ մենք պետք է կյանքի կոչենք այն ուժերին, որոնք հիմա խոր ընդհատակ են մտցրած:

Ըստ էության, ինչո՞վ է տարբերվում սոցիալիզմը կապիտալիզմից. կապիտալիզմը, ժողովրդավարություն ու ազատություն հռչակելով՝ ազատություն է տալիս մարդկային բոլոր ամենամութ բնազդներին, իսկ հոմո-սապիենսը, հարգելի Միխայիլ Պետրովիչ, ի դժբախտություն բոլորիս, շահապաշտ է, եսամոլ, ստոր եւ բոլորովին ընդունակ չի կոլեկտիվ համակեցության:

Գործող համակարգում, մենք կոշտ ու ծայր աստիճանի՝ անխիղճ, ճնշեցինք հոմո-սապիենսի ստոր հոգին մամլիչի մեջ՝ այդ պատճառով էլ, հավատացեք ինձ, բավական է փոքր-ինչ բացենք փականը, եւ ամբողջ կեղտը անմիջապես կպոռթկա ամենավերեւ:

– Բայց, այնուամենայնիվ, ո՞վ կգլխավորի առաջին էտապը, – հարցրի ես Յուրի Վլադիմիրովիչին, չնայած, արդեն, մանրամասն աչքի անցկացնելով ԿԵՆՏԿՈՄ-ի ԱՀՎ-ից (Ավտոմատ Համակարգման Վարչություն) ստացած խիստ գաղտնի «անձնակազմի» ցուցակը մտավորապես պատկերացնում էի այն հովատակներին, որոնց վրա նա պետք է գրավ դներ:

– Ինչքան բախտավոր ենք, որ գործնականում մեր համակարգում չկան կրթված քաղաքագետներ ու տնտեսագետներ. բոլոր ԲՈՒՀ-երում սոցիալիզմի (որը՝ ինչպես ձեզ քաջ հայտնի է, մեզ մոտ՝ չկա) քաղաքատնտեսության, դասավանդումը, լիովին ձեւախեղել է մեր, նույնիսկ, ասենք՝ Աղամբեկյանի կամ Շատալինի նման հայտնի ակադեմիկոսների ուղեղները. մի ամբողջ սերունդ կպահանջվի, հասկանալու համար տնտեսության էությունն ընդհանրապես, եւ շուկայականը՝ մասնավորապես:

Մեր երկրում՝ քաղաքականություն նույնպես չկա. քաղաքականություն համարվում են անդրկուլիսյան ապարատային ինչ-որ խաղեր:

Այսպիսով առաջին փուլը կղեկավարի Գորբաչովը, ում ես վաղուց եմ պատրաստում այդ դերի համար՝ համեմատաբար երիտասարդ ու պատվախնդիր մարդ է (նկատեք, որ ես ընդհանրապես տանել չեմ կարող այն զինվորներին, որոնք չեն երազում գեներալ դառնալ, այդպիսիք տեղ չունեն քաղաքականությունում.), Դուբչեկի՝ «մարդկային դեմքով սոցիալիզմի» տիպի շատ գրավիչ գաղափարներով: Ի դեպ, հիշում եք չէ՞, թե ձեզ հետ միասին, ինչ փառահեղ ձեւով խեղդեցինք այդ «պրահյան գարունը»:

Գորբաչովին շատերն են քննադատում՝ պնդում են թե՝ շատախոս է, անվճռական:

Առա՞ջինի առթիվ՝ կառարկեմ. իսկ՝ ինչ է, Ցիցերոնը շատախոս չէ՞ր. մի՞թե դա խանգարում էր նրա՝ իբրեւ քաղաքական գործչի, ժողովրդականությանը: Ինչ Ցիցերոն. վերցրեք թեկուզ մեր Իլյիչին: Համեմատաբար կարճատեւ կյանքի ընթացքում նրա ելույթներն ու գրվածքները ինչքան մեծ ծավալ են կազմում:

Ընդհակառակը, ամբողջ պատմությունը ցույց է տալիս, որ ժողովուրդը պաշտում է շատախոսներին, որոնք խոստանում են կաթնառատ գետեր ու երկնային մանանա: Ինչ վերաբերվում է անվճռականությանը, դա նույնպես զգաստություն է. Ուղղակի, Միխայիլ Սերգեեւիչի ընկալմամբ, քաղաքականությունը՝ տարբեր խմբավորումների միջեւ անվերջ մանեւրելն է, ինչը միանգամայն բնական է խորհրդային կոփվածքի քաղաքական գործչի համար:

– Համաձայն եմ, Յուրի Վլադիմիրովիչ: Բացի այդ, Գորբաչովը մեր հաղթաթղթերից միակն է, ում արեւմուտքը կարող է ընդունել: Նա հոյակապ վարվելակերպ ունի, միշտ եվրոպականին վայել հագնված է, կարծես, միակ թերությունը՝ իր բոլոր ենթականերին «դու»-ով դիմելն է... – Բավականին նուրբ դիտարկում էր, Միխայիլ Պետրովիչ. Բայց «դու»-ի առթիվ մի անհանգստացեք. անգլերենում «դու»-չկա, ու այդ անվիճելի թերությունը ոչ մի չափով չի անդրադառնա մեր գլխավոր գործընկերոջ՝ ԱՄՆ-ի հետ ունենալիք հարաբերությունների վրա:

Ի դեպ, դուք մոռացաք Ռաիսա Մաքսիմովնայի մասին: Պետք է խոստովանեմ, որ մեր բոլոր երիտասարդ առաջնորդների կանանց մեջ ամենից ավելի նա է ինձ դուր գալիս, իր նրբագեղությամբ ու ճաշակով, ու հենց դա էլ կկործանի Գորբաչովին. չէ որ մեր ժողովուրդը տանել չի կարող առաջնորդների գեղեցիկ հագնված կանանց:

– Այնուամենայնիվ, Յուրի Վլադիմիրովիչ, ես դեռ որոշ չափով տատանվում եմ... Արդյոք, ավելի լավ է՝ ինչի՞ց սկսել առաջին փուլի բարեփոխումները:

– Մի ձեւացրեք, թե անուշադիր եք, Միխայիլ Պետրովիչ, ես ինքս արդեն հիմնականում նախանշել եմ դա: Ընդ որում այնքան լուրջ, որ նույնիսկ՝ Վոլոդյան (այդպես նա անվանում էր իր հավատարիմ օգնականին՝ Կրյուչկովին – հեղ.) հավատաց աշխատանքային կար-

⊃18

